Հ․ ՔԵՐՈՎԲԷ ՉՐԱՔԵԱՆ

# ՀԱՅ ՄԱՏԵՆԱԳԻՐՆԵՐ

## ԺԹ ԴԱՐՈՒ




ՎԵՆԵՏԻԿ — Ս․ ՂԱԶԱՐ
1904

# ՀԱՅ ՄԱՏԵՆԱԳԻՐՆԵՐ

## ԺԹ. ԴԱՐՈՒ

# ՄԿՐՏԻՉ ԷՄԻՆ[1]

## 1815—1890

---

Մ. ԷՄԻՆ Նոր—Ջուղայի մէջ ծնաւ 1815 նոյեմբերի 25ին[2]. հարուստ՝ բայց իրենց ինչքէն կողոպտուած ընտանիքի զաւակ, ինչպէս ու հասարակ ամբողջ Ջուղայեցւոց համար

1. Օգտուած ենք Երուանդ Շահազիզի ընդարձակ կենսագրութենէն, Լումայ 1900 Ա. Բ. և «Ուսումնասիրութիւնք Հայ լեզուի և մատենագրութեան յարեւմուտս» գրքէն, Հ. Գ. Զարբհանալեան, Վենետիկ, 1895:
2. Իր մանկութեան տարիներուն՝ կը կոչուէր իւր հօր Յովսէփի անուամբ՝ Յովսէփեան,

*կարելի էր ըսել, կէս դար առաջ անգութ պատերազմի և աւարառութեանց մատնուած ըլլալնուն համար։ Էմին հազիւ գրել կարդալ սորված՝ ինը տարեկան տարուեցաւ Կալկաթա, ուր աւելի միջոց կար իր կրթութեան։ Հնդկաստան 1700էն վերջ սուրէ ու կրակէ փախչող Հայոց ապաստանարանը դարձած էր, և այդ հարուստ աշխարհին վաճառականութիւնը շուտով Հայերը ձեռք առին, իրենց նիւթականին հետ բարոյական ու մտաւորական զարգացումն առաջ մղեցին։ Քիչ ժամանակի մէջ հոյակապ եկեղեցիներ, դըպրոցներ, հիւրանոց, աղքատանոց ու ճեմարան մինչեւ իսկ տպարան հաստատեցին և սկսան հայ գրքեր ու լրագիրներ տպագրել։ Էմին գրուեցաւ Հայոց Մարդասիրական ճեմարանը, ուր գրաբար խօսիլը ստիպողական էր. հինգ տարի մնաց հոն, բաց ի մայրենի լեզուէն ուսաւ նաեւ Անգղիերէն, Պարսկերէնի ու Գաղղիերէնի ալ տարրերը։ «Այդ տեղ, կը*

իսկ Էմին կամ Էմինեան մականունը ընդունեցաւ ի Կալկաթա ի պատիւ իւր ազգական Էմին վաճառականի, որուն խնամակալութեան ներքոյ անցուց իւր պատանեկութեան տարիները։

պատմէ Էմին, առաջին անգամ իմացայ Լա-
զարեան ճեմարանի գոյութեան մասին, որ իմ



ՄԿՐՏԻՉ ԷՄԻՆ

մտածողութեան, ցնորքներիս առարկան դար-
ձաւ, և ես չհանգստացայ, մինչեւ որ չնստայ

մի շուետական առեւտրական նաւ, որ գնում էր Ստոքոլմ։ Նա անցաւ Ասիան, Աֆրիկէն, Եւրոպան և Շուետի ու Ֆինլանտիոյ վերայով հասաւ Մոսկուա — բաղձալի ճեմարանը»։ Տասն ու հինգ տարուան էր այն ատեն. հոն մնաց առանց ռուսերէն գիտնալու. չորս յաջող տարիներու մէջ, իր անխոնջ աշխատութեամբը և արտաքոյ կարգի ընդունակութեամբը հաւաքեց լեզուաց ու գիտութեանց մեծ պաշար մը։ 1834ին՝ անցաւ Մոսկուայի կայսերական համալսարանը, պարապեցաւ փիլիսոփայական բաժնի բանասիրական մասին։ Հոս աւելցուց Էմին յոյն և լատին լեզուաց և գրականութեան հմտութիւնը, գիտնական ուսուցիչներու ձեռքի տակ կազմուեցաւ վերջապէս այն միտքը, որ հայ — բանասիրական ճիւղը պիտի զարգարէր։

Ցեռ համալսարանի ընթացքն աւարտելու անմիջապէս 1833ին Լազարեան ճեմարանի մէջ հայերենի ուսուցիչ կը դրուի. Էմին կատարեալ գրաբարեան մ'էր, մանաւանդ որ իր ատեն աշխարհաբարը դեռ այն մեծ քայլը չէր առած, նա գրաբարը կ'ուսուցանէր, հայ հեղինակները ռուսերէն թարգմանել կու տար, և ռուսերէնէ ալ հայերէն, նոյն նպատակով գրեց իր «Տաղկաքաղ հա-

տուածք»ը։ Երկու տարի վերջ անցաւ վրան նոյն ճեմարանին Տեսչութեան պաշտօնն ալ, զոր քսան տարի վարեց, իսկ ուսուցչապետութիւնը գրեթէ երեսուն տարի։ 1870ին երբ Լազարեան ճեմարանը, յետ չորս տարի փակուելուն, վերստին բացուեցաւ աւելի մեծ ու ընդարձակ ծրագրով, վերատեսուչ էր Էմին հինգերորդ գիմնազիոնի և շարունակեց հայերէնի ուսուցչապետութիւնը. անցելոյն մէջ և աւելի եւս այս ժամանակ ցուցուց Էմին մանկավարժական գործունէութիւնը, որ ապա շատ գնահատուեցաւ. սակայն պատասխանատուութեան հոգը և պաշտօնին ծանրութիւնը յոգնեցուցին զինքը և հրաժարելով տեսչութենէ 1876ին մնաց միայն Լազարեան Լիկէոնի մէջ հայերէն լեզուի ու գրականութեան ուսուցչապետութեամբ. 1881ին Տփղիս գումարուած հնախօսական ժողովոյն ներկայ եղաւ, յետոյ կաթուածահար ըլլալով ստիպուեցաւ թողուլ գրաւոր աշխատանքը։ Շատ փափաք կը ցուցընէր առ Խորասանեան ուղղած նամակացը մէջ՝ Ղրիմ անցնիլ, հոն անցընելու համար կենացը մնացած կամ տարուոյն գեղեցիկ մասը. ինչպէս նաեւ երբեմն «ապրիլ Վենետիկում և պարապել Մխիթարեան մատենադարանում»։ Լազա-

րեան ճեմարանը կատարեց Մ. Էմինի 1886 ապրիլի 17ին յոբելեան հանդէս մը, որ իր ծերութեան ամենամեծ սփոփանքն եղաւ. գիտնական աշխարհը գիտցաւ գնահատել այնպիսի անձի մը անխոնջ աշխատութիւնը որուն, Հայ ազգին՝ իրեն լեզուին և գրականութեան վրայ ունեցած տեղեկութիւնը մասամբ կը պարտէր. Լազարեան վարժարանը՝ որուն 44 տարի ուսուցչութեամբ նուիրեր էր կեանքը, և ազգը՝ որուն լեզուին, գրականութեան և պատմութեան ուսումնասիրութեան պարապած էր։

Վախճանեցաւ Էմին եօթանասուն և հինգ տարուան, 1890 դեկտեմբեր 13ին։

Մկրտիչ Էմինի երկասիրութիւնքը կարելի է չորսի բաժնել. Ա. Հայ. ինքնագիր երկասիրութիւնք. Բ. Հայ. բնագրաց հրատարակութիւնք. Գ. Գաղղ. թարգմանութիւնք Հայ. մատենագրութեանց. Դ. Ռուս. թարգմանութիւնք Հայ. մատենագրութեանց և Ռուսերէն Յօդուածք ։ Խօսինք առանձինն իւրաքանչիւրին վրայ։

1. Չմոռնանք յիշել որ այլ և այլ առթիւ Ռուսերէնէ ի Հայ. ըրած է թարգմանութիւններ, ինչպէս Պուշկինի գործերէն թարգմանած

Ա. Էմինի ինքնագիր աշխատութեանց ժամանակաւ երիցագոյնն է «Հայկական լեզուի քերականութիւնը». յօրինած է Լազարեան ճեմարանի աշակերտաց համար, 1846ին, արդիւնք իր 12 տարուան դասախօսութեանց. զարմանք չէ որ գրաբար լեզուով գրած է քերականութիւնը՝ երբ մտածենք իրեն գրաբարը աւանդելու եղանակը և մեծ սէրը հին լեզուն կանգնելու. ընդհանրապէս հետեւած է ուսուցիչ միաբան Հ. Աւետիքեանի, ինչպէս երբեմն իր հայերէնի ուսուցիչը Միքայէլ Սալլանթեան: Քերականութեան առաջին մասը՝ Ստուգաբանութիւնը, աշխարհաբար բացատրուած է:

Հայերէն լեզուի ուսումն աւելի զարգացնելու համար 1849ին Գրաբար ծաղկաքաղ հատորուածքը հաւաքեց նախնեաց մատենագրութիւններէն, դասաւորելով լեզուաց դիւրութեան և ընտրութեան կարգաւ. նպատակն ըլլալով ռուս. թարգմանութեան վարժեցնել,

է ի Հայ գրաբար: Դարձեալ Վիլմէնի, Միջին դարու գրականութեան պատմութիւնը Գաղղիերէնէ ի Ռուս թարգմանած է, որ հրատարակուած ալ է. և քննադատուած Տեղեկագիր ամսագրէն:

աւելցուցած է հայ—ռուս. բառարան մ'ալ և կարեւոր ծանօթութիւններ։

Վէպք հնոյն Հայաստանի գրութիւնը Էմինի գլուխ գործոցն է. ուսումնական աշխարհի մէջ մեծ շռինդ հանեց 1850ին հրատարակուած գրաբար լեզուով այս փոքրիկ աետրը։ Խորենացւոյն Վէպ, Երգ վիպասանաց, թուե-լեաց, առասպել և այլն բառերը, բանաստեղծական երգոց կամ պատմութեանց հատակոտորքը կը նշանակեն. որ ըստ յունաց էպօս և ըստ եւրոպացւոց Epopée կ'անուանի։ Էմին այս կարծիքը հետզհետէ աւելի կը հաստատէ և առաջին հնարողն ըլլալուն համար պարծանք մը կը զգայ։

1. «Գողթան երգն ի Բանասէր օրագրին» վերնագրով քննադատական յօդուածով մը։ 1881ին Թիֆլիսու հինգերորդ հնագիտական ժողովոյն մէջ ռուսերէն գրուածով մը, Թարգմանուած ի Հայ. Մովսէս Խորենացի և հին Հայոց վէպերը խորագրով, Գր. մագիստրոս Խալաթեանէ, Արձագանգ օրագրի մէջ և առանձին տետրակով ալ ի. Տփղիս, 1886։ Երկրորդ թարգմանութիւն մ'ալ Խաչատուր Յովհաննիսեանցէ։ Թիֆլիս, 1887։ Քննադատութիւն մը Մեղու Հայաստանի լրագրին մէջ 1871, թիւ 162 և 164։

Բ. Անցնելով Էմինի երկրորդ գործունէութեան, այսինքն Հայ. բնագրաց հրատարակութեանց, աւելի փայլուն պիտի գտնենք, տեսնելով այդ հրատարակութեանց վրայ ունեցած խնամքը, յառաջաբանով և ծանօթութիւններով զանոնք լուսաբանելը. այդ տպագրութիւնք առ հասարակ հայ պատմութեան կը վերաբերին, և ոմանք առաջին անգամ լոյս տեսնելով ազգային պատմութեան թերի կողմերը կը լեցնեն. ասոնց մէջ արժանի է ուշադրութեան Ղազար Փարպեցւոյ թուղթը 1853ին տպուած առաջին անգամ, ընդարձակ յառաջաբանով և կարեւոր ծանօթութիւններով։ Այս հրատարակութեան վրայ կատարած է Մ. Նալբանդեանց՝ Ղազարու թղթին աշխարհաբար թարգմանութիւնը և տեղ տեղ կ'ուղղէ Էմինի ընթերցուածները և ծանօթութիւնքը։

Միւս հրատարակութիւնք են Յովհաննու կաթողիկոսի պատմութիւն Հայոց, յառաջաբանով 1853. — Մովսէս Կաղանկատուացի, պատմութիւն Աղուանից 1860. — Միխիթար Այրիվանեցի, Պատմութիւն Հայոց, առանց յառաջաբանի 1860. — Ստեփանոս Օրբէլեան, Պատմութիւն Սիւնեաց, միայն յիշատակութիւն տպագրութեանը օրինակաց 1861.

— Վարդան պատմիչ, նախկին տպագրութիւն, երկու գրչագրաց համեմատութեամբ եղած. 1861։ Այս ամէնքն ալ հրատարակուած են ի Մոսկուա, ուր Էմին մեծ ջանքով կարող եղած էր ժողովել հայերէն գրչագրեր, զորս իբրեւ հնութեան յարգող կը սիրէր և ունէր իրեն սեփական մատենադարան, և ինքը հիմն դրաւ Լազարեան ճեմարանի ձեռագիրներուն հաւաքածոյին։ Հարկ չկայ ըսել՝ թէ Էմինի հայերէն լեզուով հրատարակութիւնքը շատ քիչ են բաղդատմամբ ռուսերէնին, զորս ի կարգին պիտի տեսնենք։

Գ. Գաղղիերէն լեզուով մի միայն հրատարակութիւն կատարած է թարգմանելով Փաւստոս Բիւզանդացւոյ պատմութիւնը[1] աշխատակցելով Լանկլուայի, որուն խնդրելովն իսկ ձեռք զարկաւ. 1867, Փարիզ, Հայ պատմագրաց հաւաքման մէջ։ Էմին նպատակ ունէր Ռուսաց ծանօթացնել հայ մատենագրութեան հարստութիւնը, և չէր ուզեր շեղիլ իր ծրա-

2. Քննադատութիւն մը գերմաներէն Göttingische gelehrte Anzeigen ի 24 յունիսի 1868, և որ թարգմանուեցաւ ի՛ Հայ Հայկական աշխարհ ամսաթերթի մէջ, Տփղիս. 1868 թիւ 12. և ի Տիւլորիէի Journal des Savants ամսաթերթի հոկտեմբեր և նոյեմբեր թուոց մէջ 1869։

գրէն, մանաւանդ երբ կը տեսնէր գաղղիերէն լեզուով եղած հայ հեղինակաց թարգմանութիւններուն բազմութիւնը և միւս կողմանէ ռուսերէնի փոխելու ոչ մէկուն հոգը. անցնինք ուրեմն յիշելու համառօտիւ զանոնք ես:

Դ. Անժխտելի է որ Էմին ամենամեծ արդիւնք ունի հայ մատենագրութիւնը ռուս թարգմանութեամբ ծանօթացնելուն, և նոյն իսկ ռուսերէն յօդուածներով լուսաբանելուն ու քննելուն համար. ամենէն առաջ յիշելու արժանաւոր է իրեն ամենասիրելի և քննութեանցը աղբիւր եղող Մ. Խորենացւոյ Հայոց պատմութեան թարգմանութիւնը, հմուտ ծանօթութիւններով, որմէ վերջ իբր յաւելուած դրուած են Հայկական այբուբենին[1] վրայ վեց գլխով առանձին տեսութիւն մը և ուրիշ հատուածներ. Ա. տպ. 1858ին, Բ. տպ. 1893ին իր մահուանէն վերջ Գր. Խալաթեանցի ձեռքով. երկու տպագրութեանց մէջ կան ինչ ինչ զանազանութիւնք, սրբագրութիւնք: Նոյնպիսի հրատարակութիւնք

1. Եւարիստ Բրիւտոմ թարգմանեց գաղղիերէն Արեւելեան Հանդէսի մէջ 1865ին: Իսկ Գր. Խալաթեան կրկին զայն տպեց յետ մահուան Էմինի:

են Վարդանայ մեծին ընդհանուր պատմութիւնը , 1861ին, ներածութեամբ և ընդարձակ յաւելուածով մը ուրիշ հայ պատմագիրներու, և Ստեփանոս Տարօնեցւոյ՝ Ասողիկ (երգիչ, երաժիշտ) կոչուածին. 1864ին, հմտական ծանօթութեամբք ճոխացուցած, ասոր ետեւ կցած է Արիք և Անարիք ու Ծրաք բառերուն վրայ քննութիւններ։ — Հայոց անվաւեր գրուածներուն առաջին լուրջ ուսումնասիրութեան սկզբնաւորութեան պատիւը Էմինի կը պատկանի, որոց հաւաքման և հրատարակութեան համար Մոսկուայի Հնագիտական ընկերութեան ներկայացուց 1880ին ցուցակ մը որ 106 անվաւերներ կը պարունակէր, հանելով Էջմիածնի 1863ին հրատարակուած ձեռագրաց ցուցակէն. որոցմէ արդէն հետեւեալքը տպած էր. 1. Պատմութիւն փոխման Աստուածածնին. Յովհաննէս աւետարանչէ գրուած. հետաքրքրական է կէս մը հայկական անվաւերաց վերաբերելով, կը պատմէ Հոգեաց

1. Պրոսէ գիտական տեսութիւն մ'ըրաւ Հայ տպագրին և անոր թարգմանութեան վրայ Պետրպուրկի գիտութեանց կայսերական Ակադեմիոյ Յիշատակարանաց մէջ (Է շար, Հատ. Դ. Թիւ 9, 1862)։

վանքի շինութեան հանգամանքները, Էմին ստուգիւ Խորենացւոյն կու տայ, տպ. 1874։ 2. Հանգիստ Յովհաննու Աւետարանչի, որու հայ բնագիրն Աստուածաշնչի յաւելուածներու մէջ տպուած է. տպ. 1876։ 3. Վարք սրբոյն Թադէոսի և Բարթուղիմէոսի, զորս գրոց գիւտէն վերջ թարգմանուած կը համարի, Դ դարուն, տպ. 1877։ 4. Պատմութիւն Յովսէփայ և Ասանեթի, թարգմանուած Ղազարեան ճեմարանի ձեռագրի մը վրայէն և հրատարակուած մահուանէն վերջ ուրիշ երկու անվաւեր գրութեանց հետ, Տեսիլ Աստուածածնի և Զովսիմոսի պատմութիւն։ Բաց ասոնցմէ, անվաւեր ու նոր գտնուած հայերէն գրուածք, նման թղթոյն՝ զոր առ ծերակոյտն Հռովմայ գրեց Պոպլիոս Լենտուլոս վասն Քրիստոսի, 1880ին. և Վարք սրբոյն Ռոմանոսի և Դաւթի 1877ին. վերջապէս իր աւանդած կտակովն է, որ հետզհետէ տպարանէս լոյս տեսան Հին և Նոր կտակարանի հայ անվաւեր գրութեանց Ա և Բ հատորք և Գն ընդ մամլով է։

Տարականաց թարգմանութիւնը հմուտ և ճարտար գրչի գործ էր. ինը—տասը դարերու սեղմ, բանաստեղծական լեզուն, որուն մէջ ոտք և չափ ստէպ կը տեսնուին, օտար

լեզուի մը փոխել առանց կորսնցնելու անոնց իմաստն ու կորովը, բայց ի հմտութենէ մեծ աշխատութեան ալ կարօտ էր. այսպիսի գործի մը ահա ձեռնարկեց Էմին և լոյս հանեց 1879ին։ Երկու ուրիշ թարգմանութիւններ ալ ոչ նուազ դժուարութիւններ հանած պիտի ըլլան Էմինի. Ներսէսի Լամբրոնացւոյ Ատենաբանութիւնը իր կրակոտ լեզուին համար, և Կարսի ու Անւոյ արձանագրութիւնք իրենց շատ անգամ թերի ըլլալովը կամ գործածուած գաւառական բառերուն պատճառաւ. առաջինը հրատարակեց 1864ին, երկրորդը՝ 1881ին։ Սեւերիանոսի ճառ մը որ Վենետկեան հրատարակութեան մէջ կը պակսէր, և զոր նոյն ատենները (1827) գտած էր Մսեր մագիստրոս և տպած 1853ին, թարգմանեց Էմին ի ռուս 1878ին։ Նոյնպէս Արիստիդեայ ջատագովութիւնը Վենետկեան տպագրութեան վրայէն 1879ին։ Վերջին հրատարակութեանս մասին ուսումնական վէճ մ'ունեցաւ Ռընանի հետ, հակառակ անոր տարակուսանաց հաստատելով Արիստիդեայ ջատագովութեան վաւերականութիւնը։ Աւելի տաք և ցաւալի վիճաբանութիւն մը վառեցաւ Վիշապաքաղ յօդուածին վրայ Քերովբէ Պատկանեանի հետ 1873ին,

վերջինս կը պնդէր թէ Վահագն ոչ թէ Հնդկաց վէտայի ինդրա—վրիտրանանը է, այլ Աւեստայի վերետրագնան։ Դիցաբանութեան կը վերաբերին դարձեալ Արա Գեղեցկի 1858ին և Հետազօտութիւնք Հայոց հեթանոսական կրօնից վրայ գրութիւնքը, 1864ին. վերջինս լոյս պիտի տեսնէր երկրորդ անգամ մ'ալ յաւելուածներով, « Հայոց հեթանոսութիւնը » վերնագրով. Թարգմանուած է հայերէն՝ Տըսթալերի գաղղիերէն թարգմանութեան վրայէն։ Իսկ Լանկլուա քննադատութիւն մ'ըրաւ Nord լրագրի մէջ։

Հրէից և Մարաց գաղթականութեան պատմութիւնը ի հինն Հայաստան, 1879ին և 1881ին հնագիտական ընկերութեան նիստերուն մէջ կարդացուած. բաց ատոնցմէ Էմին դիտում ունէր Հայաստանի մէջ հաստատուած օտար գաղթականութիւններու վրայ այս տեսակ ընթերցումներ ընել։ Մարաց գաղթականութեան վրայ խօսած ատեն կը յիշէ զԱժդահակ և զՏիգրան։ Նոյն ժողովոց մէջ կարդացած է Արմաւիրի վրայ տեղագրական համառօտ յօդուած մը, և այս տեսակ նիւթոց վրայ ճառելով ռուս գիտնականաց ուշադրութիւնը կ'ուզէր հրաւիրել Հայաստանի մէջ նորանոր պեղումներ ընելու։ Հայոց

ընդհանուր պատմութեան քննական ուսումնասիրութեան համար կարեւոր կը պատէր առ ժամս առանձին մենագրութիւններով ատաղձ պատրաստել ապագային, և սկսաւ Հայկազանց շրջանէն, որուն պիտի հետեւէին ուրիշներ. երկրորդ նմոյշ մ'է Հայկազանց հարստութեան ցուցակը: Փոքրիկ յօդուածով մը կ'ապացուցանէ Էմին պատմական փաստերով, իբր պատասխան, թէ Կարսի հին եկեղեցին կը պատկանի Հայոց և ոչ Յունաց. 1879ին տպուած ի Մոսկուա լրագրի մէջ: վերջապէս յիշենք Հնագիտական ընկերութեան ժողովոյն մէջ 1880ին իր մէկ կարդացած ճառն ալ Յովհաննէս կայսեր և իրեն Ջմշկիկ մականուան վրայ, զոր կ'ուզէ մեկնել:

Մասնակցած է Էմին կրօնական խնդրոց ալ Գ. Այվազեանի «Վարդապետարանի» առթիւ և իր Հետազօտութիւնք ի վերայ պատմութեան արեւելեան եկեղեցւոյ հայաստանեայց գրուածովը 1864ին:

Ինչպէս ցանկէս կը տեսնուի, ռուսերէն թարգմանութիւնք եղած են Էմինի ամենամեծ զբաղանքը և յաջողեցաւ Ռուսաց մէջ հայկական յիշատակարանաց ուսումնական հետազօտութիւնքն արթնցնելու. գուցէ ռուսե-

րէն լեզուն մայրենի լեզուէն ալ լաւ գիտէր, որով կրցաւ ընտիր թարգմանութիւն մ՚ընել հիացման արժանի մեր Նախնեաց հոգեւոր և աշխարհական մատենագրութեանց ։

Մեր կենսագրականովը, էմին՝ ընթերցողին կը ներկայանայ գրական մեծ գործիչ մը. առանց վարանելու զինքը ոչ միայն Ռուսահայ այլ ամբողջ հայ գրականութեան ազգու և տաղանդաւոր ռահվիրայներէն մին կրնանք համարել։ Մանկական հասակէն սկսեալ համակ եռանդով տուաւ ինքզինքը գիտութեանց, յամառ ու տոկուն ջանասիրութեամբ տարրական ուսումներէն արշաւեց դէպ ի բարձր ու վսեմականն։ Յառաջադէմ ուսանող մը և հեղինակաւոր ուսուցիչ մը եղաւ. և հայ մամուլին մէջ ազգային քննական մասնաճիւղին վիթխարի մղում մը տուաւ։ Աշխարհի ալեծուփ կեանքին մէջ նա կրցաւ կղզիացեալ աբեղայի մը մեղուաջան լրջութեամբ պարապիլ հայ մատենագրութեան անմշակ գիտութեան՝ բանասիրական ուսումնասիրութեանց. իբրեւ սոսկական ինքնուրոյն անձ մը, իր բեղնաւոր գրչով, առանց կասելու՝ Նախնեաց նշանաւոր և աննշան երկերն կատարեալ յաջողութեամբ ծանօթացընելով իր ազգին ու օտարին՝ գրական

յառաջադիմութեան մեծ յաղթանակ մը ցոյց տուաւ։ Ք. Պատկանեան, Կ. Վ. Շահնազարեան և ներկայ ռուսահայ բանասէրներն Պ. Կ. Եզով, Պ. Գ. Խալաթեանց և Պ. Լ. Մըսըրեանց ծառայեցին համանման նպատակին և իրաւամբ գնահատելի եղան։

Յիշեալ ռուսահայ բանասէրներու գրուատելի նպատակն եղած է ազգիս վաղեմի քաղաքական ու գրական պատմութիւնը ցոյց տալ ռուսին, որով իրենց ամենէն ընտիր ուսումնասիրութեան մեծ մասը ռուսերէն բարբառով գրած են. և ազգիս մեծամասնութիւնը այդ լեզուին ծանօթութիւն չունենալով, վայելած չէ անոնց մտաւոր գեղեցիկ արտադրութեանց օգուտն։ Ռուսահայ մամուլները ներկայ ուսումնասէր դասակարգին լաւ ծառայութիւն մը շնորհած կ'ըլլան, եթէ յիշեալ բանասիրաց ամենէն կարեւոր պատմական և քննական երկերը հայերէն թարգմանեն։

---

# ՐԱՖՖԻ[1]

## 1835–1888

Սալմաստի Փայաջուկ գիւղի[2] մէջ ծնաւ Յակոբ Մելիք–Յակոբեան, և տասնուեօթը տարեկան Թիֆլիս եկաւ Բեղախեանցի դըպրատունը ուսումն առնելու, ուսկից շուտով փոխուեցաւ քաղքին գիմնասիոնը. երկու տարի միայն կեցաւ հոն և սէր կապեց համե-

1. Օգտուած ենք Կ. Տիւրեանի կենսագրութենէն, Հանդէս Ամսօրեայ 1887. Մշակէ, 1888, Թ. 48. Արձագանքէ 1888, Թ. 16: Համմտ. Հ. Հայկազունի. Րաֆֆիի ողբալի մահը և կենսագրութիւնը. Տփ. 1888:

2. Նոյն գիւղին մէջ դեռ մնացած է Րաֆֆիենց տունը, որ «Միրզայենց տուն» անունով ծանօթ է: Այն սենեակը ուր Րաֆֆի կ՚ապրէր, կայ դեռ, թէև ներքուստ մի քանի տեղ պատերն ու առաստաղը պատառոտած են: Սենեակի պատերը սպիտակ ծեփով ներկուած են և զարդարուած են արեւելեան–պարսկական

րոսի. 1857ին վաճառականութիւն՝ և մինչեւ 1872 զանազան ուղեւորութիւններ ընելէն վերջ Դաւրէժ, Մուշ, Վան, Աղթամար, Բաղէշ, երկրորդ անգամ մ'ալ փորձեց հօր արհեստը՝ վաճառականութիւնը. սակայն Րաֆֆի գրաւորական ուսման սիրով կը տոչորէր: Պարսկաստան մեծ վիպասանին որրան միայն կրնար շնորհել, իսկ Կովկաս եղաւ իրեն փառաց ասպարէզը. քիչ մը ատեն հայերէն լեզուի վարժապետութեան պարապելէն վերջ, երբ հազիւ սկսած էր իր անունը գրական փայլ առնուլ, ճանապարհորդութեանց նկարագրութեամբը[1] և 1874ին հրատարակած «Փունջի»

գոյնի և ճաշակի ծաղկենկարներով և պատերու մէջ ամրացած փոքրիկ հայելիներու կտորներով: Սենեակին մէկ անկիւնը դրուած է այն փոքրիկ, ցածլիկ, հնամաշ և հնաձեւ քառանկիւնի սեղանը, որու վրայ աշխատած է երբեմն Րաֆֆի: Սենեակին հիւսիսային պատէն կախուած է Տ. Րաֆֆիի նկարել տուած Խրիմեան Հայրիկի և Րաֆֆիի նկարը մէկ թերթի վրայ:

Դեռ կ'ապրին Րաֆֆիի ծերունի մայրը, երկու եղբայրները և ինն քոյրերը (Մուրճ, 1901 էջ 59):

1. Հիւսիսափայլի մէջ տպուած «Աղթամարայ Վանքի» գեղեցիկ նկարագրութիւնը, 1860ին:

երկու հատորներովը (կը պարունակեն վէ-
պեր և ոտանաւոր բանաստեղծութիւններ
Պարսկահայերի և Ռուսահայերի կեանքէն),
Գրիգոր Արծրունւոյ նիւթական ու բարոյա-
կան խրախուսովը և Մշակի լայն էջերուն



ՐԱՖՖԻ

իր դիմաց բացուելովը, նոր ընթացք մը
սկսաւ։ Այս տասնամեայ շրջանին մէջ, յո-
րում լոյս տեսած են Րաֆֆիի հեղինակու-
թիւնք, ցնցեց իր ընթերցողները, վէպերուն
ախորժելի և դիւրընթեռնլի էջերու տակ նկա-
րագրեց հայուն իր թմրութիւնը ու ագիտու-

թիւնը, գող չեղաւ բանաստեղծի նման ող-բալ աւերակներ ու շղթաներ, այլ գծեց լուսաւոր շաւիղներ Կարօի ու Ասլանի ե-րեւակայական դիւցազնութեանց ու գործօ-նէութեանց պատկերներով։

Մեռաւ Րաֆֆի 1888 ապրիլ 25ին իր յիսնամեակն հազիւ բոլորած, թողլով որ պսակներով զարդարեն անմահ շիրիմը, և կանգնեն արձան մը՝ հետագայից աւանդելու համար իր անմոռաց յիշատակը, իսկ երկու որդիքը՝ բարերար սրտերու խնամոց։

Րաֆֆիի գրուածները առանձին գրքերով լոյս չէին տեսներ, այլ մաս մաս կը տպուէին, գլխաւորապէս Մշակ լրագրին մէջ, և մա-սամբ ալ Հիւսիսափայլ, Փորձ, Արձագանք, Աղբիւր պարբերական թերթերու մէջ, Րաֆ-ֆի Մելիքզադէ կեղծ անուան տակ։ Իր մահէն վերջ է որ առանձին հատորներ եղան, կրկին տպուեցան և միշտ ալ պիտի տպուին։

Կայծեր, Դաւիթ բէկ, Խենթ և Սամուէլը իր գլուխ գործոցներն են, մի մի հրաշալիք իրենց տեսակին մէջ, ամէնքն ալ սրտի հետ խօսող, տեղեաց ու սովորութեանց գեղեցիկ նկարագրութիւններով զարդարուն։ — Կայծե-րը[1] եթէ ուզենանք համառօտել, հարկ է Ցեր-

1. Հմմտ. Քննադ. Աղբիւրի մէջ 1887, Թ. 8

բաշխերու անգթութենէն, Տէր Թօդիկի դը-
պրոցէն սկսիլ. սակայն միաձոյլ մէկ մը չէ
որուն բովանդակութիւնը հասկըցուի. կայ
և Ասլան և խումբ մը երիտասարդներ անոր
դիւցազունքն են, Ֆարհատ անոնց հետ
կ՚ախորժի հետեւիլ, առանց կարող ըլլալու
դեռ իրենց ծածուկ խորհրդոց մասնակցիլ։
Ուստի Ալֆօն այդ ընկերութեան շունչն ու
ոգին է։ Ի՛նչ գունագեղ պատկերներ կը գծէ
սուրբ Աստուածամօր վանքի առանձնու-
թեամբ, ուխտաւորներուն տարբերութեամբը,
քրդին ու տէրտէրին նկարագիրներով։ Ինչ
որ Կայծերը կը պատմէ ժողովրդական կեան-
քէն ու գաղափարներէն՝ թէպէտեւ չափա-
զանցօրէն, սակայն իրականութիւն է. իսկ
այն մասերը՝ որոնց շարունակ կը դիմէ իր
գրութիւնն, չկան մեր հասարակութեան մէջ,
բայց պէտք են ըլլալ. ահա այս է Կայծե-
րուն կրթիչ նպատակը։ Ա. հատորը որ
1883ին տպուած է առանձին հրատարա-
կութեամբ, կը հասցընէ Ասլանը մինչեւ
Վան։ Բ հատորը, հրատարակուած չորս
տարի ետքը, կը սկսի Այգեստանի ու Վանի

Բ. բաժին» — Մատենախօսութիւն. Հայկունի,
Րաֆֆիի «Կայծերը». Բագու 1884։

տեղագրականով. բժշկապետ Ասլանը այց կ'ելլէ տեղական փաշային, առաջնորդին, դպրոցին, Շամիրամայ ջրերը, Կտուց անապատը, Վարագ, և հուսկ Վանէն կ'ուղղուի դէպ ի Բաղէշ. Մուշ. Աստղաբերդի աւերակաց վրայ նստած կը քակէ Ասլան միպասանութեան ամբողջ հանգոյցը, պատմելով անոր անցեալը Ֆարհատին. որչափ սրտաշարժ են այդ խօսակցութիւնք և կարելի՞ է որ ընթերցողը առանց արցունքի առաջ երթայ։ Իբր յաւելուած Գ մաս մ'ալ, տպուած հեղինակին մահուանէն վերջ 1890ին, վէպին մէջ գտնուող ամէն անձանց զուարթ ապագաներ կը շնորհէ։

Դաւիթ բէգ (3 Հտ. Ա. տպ. 1881ին, Բ. 1890ին) տեսակ մի դիւցազներգութիւն է ժողովրդական կաղապարով։ — Անցեալ դարուն սկիզբները՝ Սիւնեաց Դաւիթ իշխանն իւր քաջ խմբովն, ինչպէս յայտնի է ի պատմութենէ, գործի մը ձեռնարկած էր, որ 7 տարիի չափ տեւելէ վերջ, իւր յաջորդի օրով փոքրիկ իշխանութիւնը զոր կանգնած էր, կործանեցաւ իրեններուն խարդախութեան պատճառաւ։ Րաֆֆի բաց ի գրուած տեղեկութիւնները ժողվելէ Դաւիթ Բէկի մասին, պտըտեցաւ Սիւնեաց աշխարհը, և ժողովր-

գական աւանդութիւնները և Մելիքներու սերունդներէն քանի մը ծերունիներու տուած տեղեկութիւնները առնելէ վերջ, գրեց այս պատմական վէպը։ Լաւագոյն նիւթ չէր կարող ընտրել Րաֆֆի՝ ըստ արժանւոյն մշակելու համար, որ և յաջողած է կատարելապէս։

Իսկ Խենթի նիւթն է, Պայազիդի պաշարման միջոց Վարդան անուամբ կորիճ հայ զինուորի մը անձնանուիրութիւնը, որ խենթ ձեւանալով կ'անցնի թշնամեաց բանակին մէջէն, քրդի մը զէնքերով ու ձիով զինուած կը դիմէ Ռուսաց բանակը Տէր Ղուկասովի քով. ամբողջ քաղաք մը ազատելու պարտքը կատարելէն վերջ կը վազէ ազատել մէկու մը կեանքն ալ «որ ամէն բանից թանգ է իրեն համար» (Ա. տպ. 1881, Բ. տպ. 1890)։

Խենթի շարունակութիւն կրնայ համարուիլ Ջալալ–էդդինի արշաւանքին պատմութիւնը. առաջին անգամ Մշակի մէջ հրատարակուած, յետոյ արտատպուած 1884ին, Բ տպագրութիւն 1890ին ի Մոսկուա։

Սամուէլը (տպ. 1886ին Արձագանքի մէջ) Րաֆֆիի պատմական վիպասանութիւններէն է, որուն նիւթը առնուած է Փաւստոսի աւանդած Ե դարու դէպքերէն, վահան Մա-

*միկոնեանի և Մերուժան Արծրունւոյ ուրացութիւնը, իրենց երկրէն քրիստոնէութիւնը վերցնելու ջանքը, հոն ըրած կոտորածները։ Սամուէլին իր հօրը (Վահանայ) և մօրը (Որմիզդուխտին, քոյր Շապհոյ) սպանութիւնքը. ահա ինչ կ'ըսէ յառաջաբանին մէջ. «Սամուէլը վաղուց իմ մտածութիւնների առարկան էր դարձել։ Խրախուսվելով այն գաղափարով, թէ որքան մեծ կրթողական ազդեցութիւն ունի պատմական վէպը ընթերցողի համար, երբ նա տեսնում է իւր նախնեաց մեծագործութիւնները և աշխատում է հետևել նրանց առաքինութիւններին, աշխատում է հեռու պահել իրան նրանց կատարած սխալներից, — այդ միտքը քաջալերեց ինձ»։ Իբրև աղբիւր ծառայած են բաց ի ազգային յիշատակարաններէն, իր ճանապարհորդութիւնքը, (վասն զի մնացած են այնպիսի խուլ առանձնացած տեղեր, ուր ժողովուրդը դեռ կ'ապրի իր վաղեմի աւանդական սովորութիւններով) և Պարսից և Մեդացիներու կեանքը, համարելով Հայերը նոյն ցեղին պատկանող և նոյն կեանքով ապրող ժողովուրդ մը։ Դուրիի բէգէն և Պարոյր Հայկազնէն (տպ. Աղբիւրի մէջ, Բ. տպ. 1895) վերջ Սամուէլը երրորդ պատմական գրական*

փորձ է։ Խամսայի մելիքութիւնները (տպ. 1882ին) Հայոց նոր պատմութեան նիւթերէն է, Սիւնեաց առկայծեալ իշխանութեան պատմութիւնն է, հայ աշխարհի վերջին յոյսերուն։ Նոյն նպատակով ռուսերէնէ թարգմանեց Զուբով Պլատոնի Ղարաբաղի Աստղագէտը (1882ին), որ Ղարաբաղի մելիքներու քայքայման և անկման պատմութիւնն է։ Իբրև Պարսկաստանցի՝ կատարելապէս տեղեակ է նա՝ նոյն երկրին թէ՛ Հայոց և թէ՛ Պարսից ժողովրդական փակուած կենացը և տեղական հանգամանացը, զորոնք վառ գոյներով կը նկարագրէ Խաչագողի Յիշատակարան (2 հատոր, տպ. 1883. նախ Մշակի մէջ, ինչպէս նաև հետևեալք), Սով, Կոռաագրութիւն, Անբաղդ Հռիփսիմէ, Մի օրավար հող վէպիկներու և պատկերներու մէջ. Կրակապաշտ Պարսիկներու կեանքէն է Բիբի–Շարաբանի. Կոստանդնուպոլսի հայ բեռնակիրներու կեանքէն Ղարիբ Մշեցին (տպ. Արձագանքի մէջ). Թէհրանի պարսիկ թշուառներու կեանքէն Խաղ–փուշերը, որ Արձագանքի 1886ին 27 և 28 թիւերու մէջ երևցած է, և Անահիտի 1901, 9 թիւէն սկսուած է նորէն տպուիլ արևմտեան հայերէնի թարգմանուած։ — Կենսագրական գրուածները հետևեալներն են.

Մի քանի գծեր Խրիմեան հայրիկի կեանքից. Միրզա Մելքում խան, հայազգի լիազօր դեսպան Պարսից. Վրաց իշխանազն Ալեքսանդրի կեանքը Պարսկաստանում. Ֆիրդովսի, Պարսից մեծ բանաստեղծ: — Ժողովրդական նկարագիրներ են, Հայ կինը և Հայ երիտասարդութիւնը (տպ. 1890ին). Քրդեր, Քրդական միութիւն: — Ճանապարհորդութեանց կը վերաբերին վերոյիշեալ Աղթամարայ վանքի գեղեցիկ նկարագրութիւնը. Ուղեւորութիւն Պարսկաստանում. Թիֆլիսից մինչեւ Ագուլիս, (տպ. Փորձի մէջ). Երկու ամիս Աղուանից և Սիւնեաց աշխարհներում: — Փիլիսոփայական է, Մարդը գոյութեան կռուի մէջ: — Ունի քննադատական յօդուածներ ալ. Թիւրքիայի Հայոց վիճակը, հանուած Կ. Պոլսի պատրիարքարանի քսանամեայ դիւանական արձանագրութիւններէն. Ինչ կապ կայ մեր և Թիւրքիոյ Հայերի մէջ. Սունդուկեանցի մի հեղինակութեան «Քանդուած օճախ»ի վրայ. Արիստակէս Վ. Սեդրակեանցի «Քնար Մշեցոց» ժողովրդական երգերու հաւաքածոյին վրայ. Բարխուդարեանց Մակար Վ.ի «Գաղտնիք Ղարաբաղի» թարգմանութեան վրայ. (տպ. Արձագանքի մէջ): Չմոռնանք յիշել Ոսկի աքաղաղ (տպ. 1882), Արծիւ

Վասպուրականի (1893), Մինն այսպէս միւսն այնպէս Թիֆլիսի վաճառականների կեանքից (1890) վիպասանութիւնները. ինչպէս նաեւ իր հետեւեալ թարգմանութիւնները Բառեր՝ Լաբրայի. Հայերը Քաբուլի մէջ. Կայենի կտակը՝ Ջախեր Մազոխի, գալիցիական զրոյցներ (1884). Ֆրիդոլին Շիլլերի (1891)։ Իսկ կիսաւարտ մնացած են բաց ի Սամուէլէն, Թիֆլիզի վաճառականների կեանքից վէպը, որմէ 150 էջ միայն գրուած է։ Իսկ մեռնելու ատեն թողուցած է ձեռագիր աւարտած վէպ Սալբին, որ բաղկացած է երեք մեծադիր հատորներէ. ինքը Րաֆֆի յաճախ կ'ըսէր թէ այս վէպին մէջ յատուկ ուշադրութիւն դարձուցած է ոճի գեղեցկութեան։ Ջահրումար, Թիֆլիսի հայերի կեանքից. Թաքուներ, հայ ուսանողների կեանքից. Մի թերթ աբեղայի յիշատակարանից։ Զանց կ'ընենք յիշել բազմաթիւ հրապարակախօսական յօդուածները, Մշակի մէջ տպուած, որոնց մէջ, ինչպէս ամբողջ վէպերուն մէջ, անվեհեր համարձակութեամբ կռուեցաւ ազգին կործանիչ թերութեանց ու ախտերուն դէմ։

Րաֆֆի թէ՛ ազգային կեանքէն և թէ պատմութենէն գրելով, ժողովրդեան կենաց մէջ

լուծում տուող ամէն տեսակ հարցեր յու-
զեց, վառելով ժողովրդեան սէրը և զգաց-
մունքը այդ հարցերու կարեւորութեան մասին։
Տաղանդաւոր վիպագրողը իր գրչի արտադրու-
թեանց գլխաւոր մասը նուիրեց Թրքահայե-
րու խնդրին. յայտնելով իր բարձր ոգելից
գաղափարները, որ ամէն տողի մէջ կ'արտա-
փայլին, որոնք բնականաբար չէին կարող
չգրաւել ժողովրդեան սիրտը, չէին կարող
անհագին ազդեցութիւն չընել. անոր համար
է որ ոչ միայն ուսեալ դասակարգի մէջ մեծ
է իր ազդեցութիւնը, այլ նաև ամենատգէտ
շրջաններուն մէջ։

Կրնանք ըսել թէ Րաֆֆի ինքնաբուխ է,
ոչինչ կամ ամենաքիչ օգտուած է եւրոպա-
կան գրուածներէն. գրութեան հանգարտ ոճը,
միակերպութիւնը, նկարագրութեանց մէջ եր-
բեմն շատ ընդարձակուիլը, և չափազանցու-
թիւնները կը կորսուին լուսաւոր գաղափար-
ներուն, ժողովրդական ճշգրիտ նկարագիր-
ներու և ուրիշ յատկութեանց մէջ։ Րաֆֆի՝
սուտ վիպասանութիւն չաւանդեր, երեւակա-
յական բանաստեղծ չէ. հայ աշխարհի ա-
մենէն սիրելի աւերակները գծելով, հոգերը,
յոյսերը, ձգտումները նկարագրելով, կեն-
դանի գոյներու տակ, իրական կեանքէ առ-

նելով, ձգիչ է, յուզիչ է։ Կ՚ընենք ուրեմն կրկնելով Րաֆֆիի վրայ գմայլողի մը խօսքը՝ թէ «Րաֆֆիի գրական բովանդակ արժանաւորութիւնը մի անգամէն բացայայտելու համար՝ բաւական ըլլայ ըսել, թէ՝ ով որ չէ կարդացած Րաֆֆիի գրուածները, այնպիսին չէ կարող հայկական ժամանակակից գրականութեան ծանօթ համարիլ ինքզինք։ . . . Րաֆֆի վիպասան է, բառին ամբողջ նշանակութեամբն; և կը շեշտենք, Հայոց մէջ առաջին վիպասանը»։



# ԳԱՄԱՌ-ՔԱԹԻՊԱ

**1833-1892**

---

Դեկտեմբեր 23ին (1901) Նոր-Նախիջեւանի Ս. Խաչ վանքի մէջ հանդիսով բացուեցաւ Գամառ-Քաթիպայի արձանը, որ պսակեց մեծ բանաստեղծին երիտասարդութեան ատեն երգած այս վսեմ տողերը.

Բայց կ'ուզէի թողնել պայծառ մի արձան,
Որ դարէ դար մընար ամուր անկործան:
Եւ երգեցի երգ ոլորուն ու անուշ,
Իմ քընարի ձայնն էր մեղմիկ ու քընքուշ:

Այդ անուշ ու քընքուշ երգերուն համար պէտք էր կանգնել անմոռանալի յիշատակ մը, արձան մը....:

Նոր-Նախիջեւանի մէջ դրաւ իր բոյնը (նոյեմբ. 8) մեր գեղգեղիչ սոխակը, Ռափայէլ Պատկանեան. բանաստեղծ էր պապը Սերովբէ վարժապետ, աւելի մեծ բանա-

ստեղծ էր հայրը Գաբրիէլ քահանայ, որուն
Թեւոց տակ սորվեցաւ ճռուողել, երբ 1850ին
սկսաւ սա հրատարակել Թիֆլիսու մէջ,
ռուսահայոց առաջին աշխարհաբար «Արա-
րատ» շաբաթաթերթը. սակայն գրաբար էր
Ռափայէլի առաջին երգը, այսինքն, «Թըռչ-
նակ» անունով ռուսերէնէ թարգմանած ո-
տանաւորը։ Դեռ հազիւ սկսած էր Ռափա-
յէլ, Լազարեան ճեմարանի մէջ, Մ. Էմինի
խնամոց տակ ուսման ճաշակն առնուլ, և
ահա կանչուեցաւ Թիֆլիս ուսուցչութիւն
ընելու Ներսիսեան դպրոցի մէջ, որուն տե-
սուչ էր հայրը, և աշխատակցելու Արարատին
որ ութ ամիս միայն կեանք ունեցաւ։ Եւ
այդ կարճատեւ շրջանին մէջ, բաց ի վե-
րոյիշեալ ոտանաւորէն՝ որ իբր գրաբար ա-
ռաջինն ու վերջինն եղաւ, գրեց ուրիշ հինգ
ոտանաւորներ ալ պարզ և սահուն աշխար-
հաբարով. Ի գերեզման Լեւոն վերջին թա-
գաւորի, Մահ Զարմայր Նահապետի, Հա-
մակերպութիւն Ցորայ, Տիեզերական առաւօ-
տեան երգ, Տիեզերական երեկոյեան երգ. ա-
սոնցմով Հայուն անցեալը ու ներկան, պա-
տերազմի ու մշակի դաշտը նուագեց։ Տէր-
Գաբրիէլի Թերթին դադրելովը Ռափայէլ ալ
անցաւ իր հօրեղբօրորդւոյն՝ Քերոբէ Պատ-

*կաննեանի քով, Դորպատի համալսարանը․ այն տեղ կրթուած էին Աբովեան և Նազա-*



ՌԱՓԱՅԷԼ ՊԱՏԿԱՆԵԱՆ

*րեան, հոն* 1840*ին վերջերը Լազարեանք՝ իրենց հռչակաւոր ուսումնարանին ընդունակ*

աշակերտներն կը ղրկէին իրենց հաշուով, ուսումնին շարունակելու համար. և այդ ու-



ՆՈՐ–ՆԱԽԻՋԵՒԱՆ, ՌԱՓ. ՊԱՏԿ.Ի ԱՌԱՆՁՆԱՍԵՆԵԱԿԸ

սանողներն էին որ թարգմանեցին շատ մը երգեր որ հիմայ ազգային դարձած են, և

անոնք երգեցին Ծիծեռնակը։ Այսպիսի կե-
դրոն մը ահա կը գտնուէր Ռափայէլ 1852ին,
և նոյն թուականը կը կրեն «Սիրոյ երգը»
և «Հայոց գինին» ոտանաւորները։ Նոյն
տարին անցաւ ի Մոսկուա, և մտաւ Հա-
մալսարանին պատմական—լեզուագիտական
մասին մէջ. թէպէտ հոս ալ երկար պիտի
չմնար, սակայն 1854ին Մոսկուայի մէջ
կազմուած ընկերութիւնը պիտի անմահացը-
նէր զՊատկանեան Գամառ—Քաթիպա անուան
տակ։ Այդ ընկերակցութեան նպատակն էր
ժողովրդեան համար ընթերցման գրքեր հրա-
տարակել. և երեք հիմնադիրներուն անուան
ու մականուան սկզբնատառերով (Գէորգ Քա-
նանեան, Մնացական Թիմուրեան, Ռա-
փայէլ Պատկանեան) կազմեցին Գամառ—Քա-
թիպա կեղծանունը. այդ անուամբ լոյս պիտի
տեսնէին զանազան գրական աշխատութիւն-
ներ. և առաջին անգամ, Պետրբուրգի մէջ
1855ին լոյս տեսաւ, «Գամառ—Քաթիպա»
տետրակը, վրան զի ամենէն եռանդուն ան-
դամը, Ռ. Պատկանեանը, Պետրբուրգի հա-
մալսարանը կը գտնուէր։ Տետրակը 16 երե-
սով, ոտանաւոր և արձակ գրութիւններէ կը
բաղկանար։ Ոտանաւորներուն մէջ, որ չորս
են թուով, և հարկ չկայ ըսել թէ Պատկա-



ՆՈՐ–ՆԱԽԻՋԵՒԱՆ ՌԱՓԱՅԷԼ ՊԱՏ·Ի ՏՈՒՆԸ ԵՒ ԸՆՏԱՆԻՔ

նեանին են, ամենէն անուշն է լեզուով ու արուեստով «Երկու քոյր»ը. շատ չանցաւ, երկու տարուան մէջ ետեւէ ետեւ ելան ուրիշ չորս տետրակներ ալ, որոնք ընդ ամէնը 18 բանաստեղծութիւններ կը բովանդակեն, և փութանք ըսելու՝ որ ասոնց մէջ առաջինն է բանաստեղծութեամբ, սահունութեամբ, իմաստներով, միով բանիւ, ամէն մասամբ, «Մայր Արաքսի», — և չենք սխալիր՝ եթէ ըսենք թէ Պատկանեանի գլուխ գործոցն է այդ, որ նոյն ատեն դեռ քսանը հինգ տարուան էր, ուսանող, տպագրութեան ամէն հոգերով բեռնաւորուած: — Ընկերութիւնը լուծուեցաւ, սակայն Գամառ — Քաթիպա կեղծանունը մնաց Ռ. Պատկանեանի վրայ: 1860ին աւարտեց համալսարանի շրջանը, մինչեւ այս ատեն հրատարակելով մանկավարժական քանի մը գործեր ալ. Նոր—Այբբենարան 1856ին, Ազգային երգարան 1856—1857ին, ուր հաւաքուած են այբուբենի կարգով գործածական հին և նոր ազգային երգերը, և անոնց մեծ մասը եւրոպական խազերով ձայնագրուած. Ռոպէնսոն Գրիզոյի պատմութիւնը 1857ին, Եզովպոսի Առակները 1859ին, երկուքն ալ պատկերազարդ: Ռ. Պատկանեան կը տեսնուի

նաեւ սոյն ատեններս Հիւսիսափայլի մէջ Ոսխոռաւորք գրուածով, որ առանձին գրքուկով տպուեցաւ ի Թիֆլիս և Մեծն Նափոլէոնի պատմութեամբ. և 1860էն վերջ Կռունկ հայոց աշխարհի, Մ. Աղաբէկեանի ամսաթերթին մէջ. և այս վերջնոյս մէջ հրատարակեց 1861ին, Քաջ Վարդան Մամիկոնեանի մահը գունագեղ բանաստեղծութիւնը, որ իր սկզբնաւորութեամբ

Ո՛վ լուսին լուսին, էլ քանի՞ էդպէս
Դալկացած, տըժգոյն, տըխուր երեւես.

Նահապետին երգերէն մին՝ Աւարայրի Պլպուլն կը յիշեցնէ, որ նոյնպէս առ լուսին՝ ոչ տխուր, այլ հանդարտ լուսնին կ՚ուղղէ իր խօսքն.

Ո՞նց գաս իմ լուսնակ հեզիկ ու հանդարտ
Համասփիւռ լուսովդ ի լեռ, ձոր և արտ.

Երկու մեծ բանաստեղծներու Վարդանայ վրայ այս երգը քանի նման ու աննման է, և վայրկեան մը կը յիշեցնէ Մ. Ջերազի Գրական փորձերու գեղեցիկ մէկ էջը, Պէշիկթաշլեանի և Ալիշանի զուգակշիռը: Գամառ–Քաթիպայի ու Նահապետի՝ Վարդանայ վրայ երգը լսելնէս վերջ պէտի ըսենք. «Եր-

կուքն ալ կ'երգեն։ Ալիշանի երգը գոռում, Պատկանեանինը ճլուըլիւն է։ Մի ջրվէժ է Ալիշան, որ ոռնալով ժայռէն վար կը նետուի...։ Պատկանեան մի առուակ է, որ խոտին տակ դըդըշելով կը սահի, չի հոսիր կը ծաւալի...»։

Գամառ–Քաթիպա, բաց ի բանաստեղծութիւններէ արձակ գրուածներու ալ ճաշակը տուաւ Կռունկի մէջ, Թոմաս Բոգարիս (1861), Թրօվաթօրէ (1861), Խաչակրաց արշաւանքը (1862), թարգմանութիւններով, որոնք Մ. Մինասիրեան[1] կեղծանուն ստորագրութիւնը կը կրեն։

1863ին փորձ մ'ըրաւ Գամառ–Քաթիպա ուսումնական թերթ ալ հրատարակելու, և առաջին թիւը լոյս տեսաւ սեպտեմբերի մէջ

1. Այլ և այլ կեղծանուններ գործածած է Պատկանեան ժամանակին ու պարագային համեմատ. «Խամչի, Նշտրակ, Պիզ, Տանղա, Ճանկով Մամոչկ, Ռշատոշրա», 1877–1880 Մեղու Հայաստանի լրագրին մէջ. «Խըձի աղայ» կայիափա գրուածին տակ. «Աշուղ Կարապետ» Գամառ–Քաթիպա հրատարակութեան Ա. տետրակին մէջ, 1843. «Ախտամերկեան, Սիսլիսկ. Պալքա, Միքայել Վայելչեան» զանազան վէպերու տակ նշանակուած։

Հիւսիս անուամբ, քառածալ՝ 8 երեսով. աշխատակիցները գրեթէ իր ընտանիքով կը կազմուէին. Ք. Պատկանեան ընդարձակ յօդուածով մը՝ լրագիր հրատարակելու մասին կը խօսէր. Ծերունի հայրը, արձակ ու ոտանաւոր գրուածներով կ'օգնէր, օրինակ Օլգա Ամիզի, մեր բանաստեղծին ապագայ ամուսինը եւրոպական հեղինակներէն քաղուածներ թարգմանելով. ինքը Ռափայէլ ալ՝ քնարը թողած արձակ գրութեանց[1] ու թարգմանութեանց[2] ձեռք կը զարնէր. սակայն տարի մը հազիւ ապրեցաւ իրեն շաբաթաթերթը, վերջապէս ծախեց տպարանը և 1866ին Նոր-Նախիջեւան վերադարձաւ։

Ուսուցչութեան զբաղումն էր որ այդ թուականէն վերջ Պատկանեանի կենաց մեծ մասը պիտի գրաւէր, նախ իրեն բացած «Օրինակելի պանսիոն» (1867–1876) և «Մանկական պարտէզ» (1879) դպրոցներուն մէջ, և յետոյ 1880ին Նոր-Նախիջեւանի հարիւրամեակի յիշատակին հիմնուած «Արուես-

1. «Ց. Ալամդարեան», «Վէրք Հայաստանի» (անկատար), «Խոյեցիք», «Աստրախանայ Հայեր», և այլն։

2. «Ծովաշրջիկ Սինդբադի եօթն ճանապարհորդութիւնները», «Ուրուականի վէպը»։

*տական պարոցին» տեսուչ կարգուելովը, և նա այս պաշտօնը անընդհատ մինչև 1892 վարեց, մինչև որ Թոքախտի տանջող սուրը կտրեց մեծ ու անմահ քերթողին կենաց թելը, սուգի մէջ թողլով ընտանիքը իւր զաւակներով և ամբողջ ազգը։*

*Պատմեցինք Գամառ—Քաթիպայի մինչև 1866 անցուցած գրական կեանքը, բայց Նոր-Նախիջևանի՝ ժողովրդեան մէջ հաստատուելէն ետքը. մանր պիտի քննէր նա ժողովրդեան ցաւերն ու վէրքերը, ու այդ քննութիւնները՝ թէպէտ գաւառական լեզուով, սակայն վիպագրի մը գրչով պիտի արձանագրէր շարք մը յոյժ հետաքրքրական պատկերներու ու վէպիկներու մէջ (Ծատերեն մեկը, Օձի խածած, Վարժապետ, Վարքեվօր, Սատանայի օջիղ, Խօսքչախ, Ձախոշ, Տրացիեւ և այլն), Ախտամերկեան ու Միշլիշկ ստորագրութիւններով։ Իսկ իր քաղաքացւոց ախտերը պիտի ծաղրէր և կծու երգիծաբանութեամբ պիտի նկարագրէր քերթուածներովը, որոնք լոյս տեսան 1879ին «Նոր—Նախիջևանցոց Քնար»ին մէջ, և յետոյ այլ և այլ ժամանակ մինչև 1888 պարբերական թերթերու մէջ։ Գրականական լեզուով են Աղբիւր, Լեզու կտրող, Հոգեվար հայր, իսկ Փորձի*

մէջ, լոյս տեսած են (1880) Ես նշանած էի, և Փառասէր վէպերը, որոնք նըկարագիր են հայ ուսանողի կեանքին, իսկ Արձագանքի մէջ 1884ին և առանձին գըրքուկով տպուած Տիկին և Նաժիշտ վէպը, որ պատկեր մ'է հայ վաճառականի բարքին։ Ունի թարգմանութիւններ ալ, ճանապարհորդական ու պատմական ու զանազան գրուածներ ցանուած ու ցրուած գրեթէ ամէն ռուսահայ թերթերու մէջ[1]։ Իրեն թարգմանութիւնն է Պուշկինի «Ոսկի ձկնիկ»ը տպուած ի Թիֆլիս. Ճռաքաղ օրագրի մէջ, գրած է «Յովհան Ոսկեբերանի վարքը». և Ծիածանի մէջ «Ճառ ըստ դիպաց Այվազովսքի Վ.ի Պետերբուրգ գալուն»։ Ունի երկու գրքոյկներ «Մանկական ոտանաւորներ և երգեր» Թիֆլիս տպուած, ինչպէս

1. Գր. Խալաթեան հրատարակած է 1893ին ի Պետերբուրգ Պատկանեանի Ընտիր Երկասիրութիւնները 2 հտ., կենսագրական նկարագրով, ուսկից մենք ալ օգտուեցանք։ Դարձեալ լոյս տեսած են ի Մոսկուա 1864ին և 1881ին Գամառ-Քաթիպայի բանաստեղծութիւնք ու Ազատ երգեր անուններով։ Համմա. Մշակ, Զալխուշեան, 1901. — Տարազ, Շահազիզ, 1901. — Գեղունի 1901, Վենետիկ։

դարձեալ «Մայրենի բարբառ» դասագիրքը ի Թիֆլիս և «Հնչական այբբենարան»ը, ի Վիէննա տպուած. յիշենք վերջապէս «Նոր-Նախիջեւանի Պատմութիւնը» և ձեռագիր մնացած «Ռուսա—Հայ համառօտ բառարան»ը ու շատ մը ոտանաւորներ, որոնք բարեկամացը քով կորսուած են:

Գամառ—Քաթիպա գրեթէ միշտ առիթով մը կը հանէր իր գրուածները. «Կարինի Սոխակը», «Կայափան», և այլն, զայս կը հաստատեն. իսկ 1877 ի պատերազմը, զինքը ստիպեց՝ Վանեցւոց ու Մշեցւոց վրայ աղի արցունքներով երգեր յօրինելու: Եթէ իբր դասախարակ չկրցաւ օգտակար ըլլալ, որովհետև չէր մեծ կրթիչ մը, սակայն Գամառ-Քաթիպայի քնարը թրթռացուցին այն անուշ երգերը՝ որոնց արձագանգ կու տան, գրեթէ կէս դարէ ի վեր, շքեղազարդ դահլիճներու գմբէթները, լերանց ու ձորերու ժայռեր: Պարզութիւն ու բնականութիւն, կենդանի նկարագրութիւն ու վառվռուն երեւակայութիւն, — ահա ընդհանուր ուրուագիծ մը մեր քնարերգակ բանաստեղծին ու վիպագրողին: Գիտցաւ նա ժողովրդեան համար ըլլալ, անոր լեզուն, անոր զգացումները հնչեցուցին իր թելերը, թէպէտ խիստ պարսաւներ,

թէպէտ երգիծաբան յանդիմանութիւններ թափէր հայ ժողովրդեան գլխուն վրայ, սակայն պիտի չպազրէր ազգին երգիչը[1], ազգին բանաստեղծը կոչուելէ։

Իր հայրենասէր համարձակութեան ու անկեղծութեան համար, կենդանութեան ատեն փառաց պսակը գլխուն վրայ միշտ չկըրցաւ տեսնել. սակայն մահուընէն վերջ բարձրացաւ գովասանաց ամպերով և ապագայք պիտի ճանչնան Գամառ-Քաթիպայի մէջ իրենց պարծանքը։

Պատկանեանի տունը կը գտնուի Նոր-Նախիջեւանի «Ս. Թորոս» թաղի «Ս. Թորոսի» փողոցի վրայ։ Փայտակերտ է և շինուած ընդարձակ բակի մէջ իր սիրած պարտիզին խորը։ Տունը փոքր, ցած, մէկ յարկով է, և աւելի գիւղական պարզ խրճիթի մը կը նմանի, քան թէ քաղաքացւոյ բնակարանի։ Պատկերի մէջ կը տեսնուի տան

1. Սոյն տիտղոսով լուրջ ուսումնասիրութիւն մը կատարած է Պ. Եղիշէ Մաղաթեան (Մուրճ, 1892 N. 10, 11. 1893 N. 4)։ Իսկ Պ. Կ. Կուսիկեան ուսուցիչ Մոսկուայի Լազարեան Ճեմարանի մէջ, «Բանաստեղծ քաղաքացի» խորագրով քննադատութիւն մը Գամառ-Քաթիպայի գրուածոց (Մուրճ, 1897 N. 5, 6)։

ճակատը և գլխաւոր մուտքը, որուն առջեւ նստած են իր այրին և աղջիկները: Պարտէզը, որ հիմայ առաջուանը չէ, Պատկանեանի ձեռքի արդիւնքն էր. իր բոլոր ազատ ժամանակը կը նուիրէր նա այդ պարտիզին, փորելով, մաքրելով և մինչեւ իսկ հեռաւոր տեղերէ ընտիր պտղատու ծառերու տունկեր բերել տալով և հոն տնկելով:

Պատկանեանի տունը կը բաղկանայ չորս սենեակներէ: Մուտքէն փոքրիկ նախասենեակի մը մէջ կ'երթըցուի, որուն ձախակողմեան պատին մէջ բացուած դուռը կը տանի պզտիկ, ցած սենեակ մը որ հանգուցեալին առանձնասենեակն էր: Բանաստեղծին մահուընէն վերջ, այդ սենեկին կարգը ու կահքը փոխուած է, սակայն լուսանկարելու համար տրուած է անոր ճիշդ այն ձեւը որ իրեն կենդանութեան ատեն ունէր:



# ՍՏԵՓԱՆՈՍ ՆԱԶԱՐԵԱՆՑ

**1812–1879**

---

ԼՐԱԳՐՈՒԹԻՒՆԸ *Ռուսահայոց մէջ* 1858*ին վերջը փայլ առաւ. Թէպէտ Կովկաս* (1846–8) *և Արարատ* (1850–1) *իրենց կարճատեւ կեանքը մէջ անոր գաղափարն ու ճաշակը տուած էին, սակայն ոչ նոյն գիտական և ոչ ժողովրդական ուժգին մղում մը պատճառեցին՝ ինչ որ մի և նոյն ժամանակ հրատարակուիլ սկսող Ճռաքաղ. Մեղու Հայաստանի և Հիւսիսափայլ թերթերը: Մենք պիտի խօսինք վերջնոյս և անոր նշանաւոր խմբագրին՝ Ստեփանոս Նազարեանցի վրայ:*

*Նազարեանց կամ Շահնազարեանց Ստեփանոս, Խոյեցի Տէր Եսայի քահանայի կրտսեր որդին էր, ծնած ի Թիֆլիս* 1812*ին:*

«Իմ նախակրթական ուսումս, կը պատմէ ինքը Ստեփանոս, մի թշուառ և աղքատին բան էր, համեմատելով այժմեան մանուկների բազմամասնեայ ուսանելի նիւթերին, մի փոքր ընթերցանութիւն գրոց լեզուով գրքերի, լոկ հայերէն և այն իսկ անհասկանալի հին հայերէն, որ չունէր ոչինչ սնուցիչ նիւթ իմ երեխայական հոգուս համար։ Իմ առաջին կրօնական դաստիարակութիւնս ստացել եմ Նոր Կտակարանի պատմութիւնից[1]»։ Տասն և չորս տարեկան յանձնուեցաւ մեծ եղբօրը հետ՝ այն ժամանակները մեծ համբաւ ունեցող Ղարաբաղցի Պօղոս վարդապետին, որ Ներսիսեան դպրոցի բացուելէն առաջ, վանքի եկեղեցւոյ բակը խուցի մը մէջ քա-

1. *Հիւսիսափայլ*, 1864 թ. 5 եր. 320–6։ Համմտ. Ա. Երիցեանցի «Ստեփաննոս Նազարեանց և նորա գրականական գործունէութիւնը» (Փորձ, 1879, թ. 10, էջ 31–83. 1880 թ. 1, էջ 53–87 և պատասխան Ս. Շահազիզեանի 1881 թ. 4, էջ 211–264)։ Ս. Շահազիզեանի «Հրապարակախօս ձայն» (Մոսկուա 1881)։ Արարատեան «Դիմագրաւ ընդդէմ սատան յարուցելոց ամենապատուական լեզուիս Հայոց» (Տփղիս 1838)։ Յովսէփ Ձերքեզեանց (Մեղու Հայաստանի 1860)։

նի մը տղոց հայկաբանութեան դաս կու տար։ Անոնց մէջ էր Խաչատուր Աբովեանն ալ, որ Նազարեանցի հետ Զամչեանի քերականութիւնը և Ագոնցի ճարտասանութիւնը կը մաշեցնէր։ Քիչ վերջ Ներսիսեան դպրոցի մէջ՝ նոր ուսուցիչ մ'ալ ունեցան հայերէնի, Պ. Առաքել Արարատեանը. իսկ կրօնագիտութեան համար հրաւիրուած էր հոն Յար. Ալամդարեանց քահանայն, որ իր քաջավարժ աշակերտները, պատրաստելէն վերջ, կը ղրկէր կիրակի օրերը եկեղեցեաց մէջ քարոզելու։ Անգամ մը Նազարեանցի ինկաւ Հաւլաբարու Զորաբաշի եկեղեցւոյն մէջ քարոզել. որ վսեմ ոճով ու ձեւերով կ'ատենաբանէր աստուածպաշտութեան վրայ, օրինակ բերելով Վարդանանց նահատակութենէն, երբ մեր քարոզիչը իր ճառին մէջ կրկնեց մի քանի անգամ «քաջ, քաջեր» բառերը, Սօս անունով Հաւլաբարցի մեծատունը ա՛լ եւս չհամբերելով լռեցուց ճառախօսը բարձր գոռալով. «Այ Տէր Եսայու տղայ, դու՝ թէ կարես՝ հոգուց խօսիր, թէ չէ, այս սուրբ եկեղեցու մէջ, հեռի՛ մեզանից, քաջերն ու դեւերն ի՞նչ բան ունին»։

Նազարեանց, քսանամեայ՝ Ներսիսեան դպրոցին ընթացքն աւարտեց, սորվելով հոն

քիչ մը Հայերէն, ռուսերէն, պարսկերէն և գաղղիերէն. բայց կարօտ էր բարձր կրթութեան։ Ոմանք կը կարծեն թէ Մոսկուայի Լազարեանց Ճեմարանին մէջ ալ քիչ մը ժամանակ մնացած ըլլայ։ Վերջապէս ինքն ալ յաջողեցաւ Արտէմեանի նման մեկենաս մը գտնելով անցնիլ Դորպատի համալսարանը 1832ին, իրեն անդրանիկ ընկերոջը քով։ Ութը տարի վերջ աւարտեց իր ուսումը, և երկու տարւոյ չափ Ցըքէնի և Բրոսսէի աշակերտելով Պետերբուրգի մէջ, առաջինին արաբերէնի և պարսկերէնի, իսկ երկրորդին՝ Հայկաբանութեան պաս առաւ։ 1842ին Ղազանի համալսարանը փոխուելով, չորս տարի ետքը ստացաւ Արեւելեան լեզուաց ուսուցչութեան աստիճանը. ուր միեւնոյն ժամանակ պաշտօնատար էր Հայերէն լեզուի, գրականութեան և պատմութեան։ 1849ին հրաւիրուեցաւ Լազարեան Ճեմարանը, ուսուցիչ կարգուելով արաբացւոց և պարսից գրականութեան, որուն մէջ Հայկականէն աւելի հմուտ էր։ 1869ին Թիֆլիս գնաց իբրեւ տեսուչ Ներսիսեան դպրոցին և երկու տարի վերջ ի Մոսկուա դարձաւ՝ Լազարեան Ճեմարանը՝ առաջին պաշտօնով, ուր և մնաց մինչեւ 1879 ապրիլի 26, իր մահուան օրը։

Այսքան գիտութեամբ լցուած Նազարեանց, ուսուցչութենէ զատ՝ պէտք էր որ մեծամեծ օգուտներ մատուցանէր ազգին ամբողջութեան, զոր անկեղծ և վառ սրտով կը սիրէր. պէտք էր անոր հարստութեանց ու հնարագիտութեանց յարմար պարման մտածէր, երբ ազգին ծառայելու պատրաստակամութեամբ կը տրոփէր կուրծքը. Թէ յայժմ ո՞րչափ յաջողեցաւ և կամ գործը իր եռանդեան համապատասխանե՞ց, պիտի ցուցընենք իրեն իւրաքանչիւր գրուածները քննադատելով:

Նազարեանց ռուսերէնով բացաւ իր գրական աշխատութիւններուն դուռը. բաց ի ռուսերէն մէկ գրուածքէն «Տեսութիւն հայկական դպրութեան», որ ուսուցչութեան տիտղոսը ձեռք բերելու համար հանեց 1846ին, ունի երկու ուրիշ աշխատութիւններ ալ նոյն լեզուով, մին՝ 1849ին տպուած ի Կազան, Աբուլ Ղասըմ Ֆիրդուսիի՝ հեղինակ Շահնամէ անուամբ ծանօթ Թագաւորաց գրքին. որուն կցած է համառօտ տեսութիւն մը պարսկական բանաստեղծութեան մինչև ԺԵ դարու վերջերը: Միւսը՝ 1857ին հրատարակուած ի Մոսկուա, Թարգմանութիւն մը պարսկերէնէ, Սաադի – Մուսլեհէդդին Շէյ-

խի Կիւլիստան գրքին։ Սակայն ասոնցմէ աւելի կարեւոր են մեզ հայերէն լեզուով հրատարակածները։

Առաջին աշխատութիւնը, որով սկսած է Նազարեանց հայերէն լեզուով իր գրական գործունէութիւնը, Փորձական Հոգեբանութեան ճառն է, տպուած ի Մոսկուա 1851ին։ Երիցեան կ'ապացուցանէ թէ գիրքս թարգմանուած է ռուսերէնէ, և հակառակ Ս. Շահազիզեանի պաշտպանութեան, սուր լեզուով մը կը դատապարտէ Նազարեանցի ընտրողութիւնը, գրաբար գրելուն պատճառը և անոր լեզուն. և յիրաւի կարելի չէ արդարացնել այնպիսի անմարս գրութեան մը՝ հրապարակ նետուելուն պատճառը, եթէ աչք մը տանք անոր յառաջաբանին ուր Նազարեանց կը խոստովանի՝ թէ ձեռք զարկած է այս գործին ազգին խեղճութեան ու տգիտութեան արգահատելով։ Իսկ գրաբարով գործի կը սկսէր «առ ի ցնդել և փարատել զտարակոյս կասկածամիտ արանց ոմանց՝ որք չև ևս գիտեն թէ և մեր ուսեալ է փոքր ի շատէ պաշտել զդպրութիւն ի ժանգոտեալն աննորոգելի հնութեամբ լեզու. առաջնոց Հայկազանց»։ Արձագանգ մ'է սա իրեն դէմ եղած թշնամութեանց զոր «Տեսութիւն Հայ-

*կական դպրութեան» ռուսերէն գրքով գըր-գռեց, ժամանակին Հայկաբան կոչուած Հայ գիտնականները հնամոլ ու խաւարապաշտ անուանելով։*

*Գրաբարով իր Հակառակորդները ջախջախելէն ետքը, մէկդի նետեց այլ եւս այդ «ժանգոտած» զէնքը և գործել սկսաւ իրեն սիրած ու պարընուած աշխարհաբարով ։ 1853ին Հրատարակեց ի Մոսկուա, Վարդապետարան կրօնի հասարակաց հայախօսութեամբ գիրքը. նոյն տարին պարձեալ Առաջին հոգեղէն կերակուր հայազգի երեխաների համար անունով այբբենարան մը. չենք ուզեր երկարել այս փոքր գրքոյկներու վրայ մեր խօսքը ։ Նազարեանցի անուան աւելի արժանաւոր գործ է Հանդէս Նոր Հայախօսութեան տիտղոսով, երկու մեծ հատորներու մէջ ամփոփուած գիտական, պատմական, կենսագրական, զուարճալի և սրամիտ ըսուածքներու, ու ամէն տեսակ նիւթերու վրայ խօսող մատեանը, 1857–8ին տպուած ։ Հեղինակը կը յայտնէ յառաջաբանի մէջ թէ հաւաքած է զայն իբրեւ «մի յարմարաւոր ընթերցանութեան գիրք ազգի համար, թէ՛ արժանապէս ժամանակ անցուցանելու և թէ իւրեանց միտքը ճոխացնելու այնպի-*

սի ծանօթութիւններով, որ հարկաւոր էին մեր ժամանակի փոքր ի շատէ կրթեալ հայ մարդուն»։ Նազարեանցի այս գործը կը զարդարէր նոյն ժամանակուան զարգացած հայոց գրասեղանը, որովհետև Նազարեանցի գրչի տակէն դուրս եկած էր և մեծ հետաքրքր-քրութեամբ կը կարդացուէր։ Նալբանդեանց՝ անոր լեզուական պակասութիւնները ցոյց տալէն վերջ, կը գովէ՝ անշուշտ քիչ մը չափազանցութեամբ, հետևեալ կերպով, «Հանդէսը (նոր հայախօսութեան) է մի ընտիր պատուական գիրք ընթերցանութեան՝ ազգիս փոքր ի շատէ գրագէտ բազմութեան և զարգացած մանուկների համար»․ և կ'անուանէ զանիկա «մի յաւիտենական գեղեցիկ արձան, որով պիտոյ է անմահանայ նորա (Նազարեանցի) միշտ գեղեցիկ անունը[1]»։

1858ին դարձեալ տպուեցաւ, Պէտնարտէն տը Սէն Բիէրի գեղեցիկ վէպը Պաւլոս և Վիրգինիա հանդերձ Հնդկական խրճիթով, Նազարեանցի գրչով հայացած։ Իր միւս տպագրեալ գործերն ալ յիշելու համար, ըսենք թէ 1870ին հրատարակեց Պատմութիւն Պեդագոգիկայի (Թրգմ․ գերմաներէնէ)

1․ Հիւսիսափայլ, 1858 Թ․ № 1

և երկու հատ ճառ, Ներսիսեան դպրոցի տարեկան համարատուութեան տեսարանին մէջ. և 1871ին, Տփղիսու մէջ, Տեռակեան և գործնական առաջնորդ ռուս լեզուի։ Բաց ասոնցմէ Նազարեանց թողուց քանի մը անտիպ գրուածներ. որոնցմէ ոմանք աւարտած ալ չեն. իր մահուընէն վերջ հրատարակուած կը գտնենք Գրակ. և Պատ. Հանդէսի մէջ (1888, էջ 234) իր ամենաընտիր գրութիւններէն մէկը. Հայոց ժողովուրդը, նոր այժմեան լեզուի և մատենագրութեան վիճակը Ռուսաստանում. համառօտ տեսութեամբ. 1876ին գրուած գրեթէ 30 էջ կազմող այս քննութիւնը կը խօսի ժամանակին ռուսահայ թերթերուն, անոնց լեզուին և պարունակութեան վրայ։ Նոյն Հանդէսին մէջ դարձեալ, «Ազգ մը Լապտեր Հայաստանի օրագրին» (Անդ, 1889, էջ 282), զոր Հիւսիսափայլի դադրելէն չորս տարի վերջ կ'ուզէր հրատարակ հանել, և որուն աշխատակցիլ խոստացած էին գիտնական անձինք. Գ. Քանանեանց, Կ. Եզեան, Մսեր Գրիգորեան և Ս. Շահազիզ։ Սակայն իրմէ անկախ պատճառներէ արգիլուեցաւ կ'ըսէ Մեղու Հայաստանի (1879, թ. 32)։ Ասոնք են առ հասարակ Նազարեանցի գրական վաստակները, զանց

կ՚ընենք յիշել իրեն նամակները, որոցմէ ոմանք Լումայ և այլ ամսագրոց մէջ հրատարակուած են։ Անցնինք հիմայ իր հրապարակական գործունէութեան օրկանին՝ Հիւսիսափայլի։

1858 թուականին էր, ինչպէս ըսինք առաջ, որ Հիւսիսափայլի հետ ուրիշ երկու թերթեր ալ յայտնուեցան. սակայն Նազարեանցի թերթը միայն, կրնանք ըսել, ընդհանուր և բարձր նպատակ մ՚ունէր. յեղափոխել ազգային կեանքը, լեզուն. ցնցել ու արթնցնել մտքերը, վերջապէս լոյս մը սփռել, զոր իր անուամբն ալ կ՚ուզէր քարոզել, Հիւսիսափայլ, Օրագիր ընդհանուր ազգային լուսաւորութեան և դաստիարակութեան։ Հիւսիսափայլ 1858էն–64 հրատարակուեցաւ, տարի մը միայն ընդհատուելով (1863) բաժանորդաց նուազութեան պատճառաւ. յետոյ նիւթական օգնութեամբ զօրացած 1864ի մարտին նորէն սկսաւ հրատարակուիլ, սակայն մինչեւ տարեգլուխ հազիւ կրցաւ դիմանալ և տարւոյն վերջը՝ իրեն ալ վերջն եղաւ[1]։ Ամէն ամիս 80

1. Հիւսիսափայլը դադրեցնելու համար այլ և այլ ջանքեր եղան հակառակորդաց կողմէն

երեսէ բաղկացեալ ամսատետր մը կ'ելնէր, որ կը տպուէր ի Մոսկուա ուրիշ տպարաններ



և վերջերը Լազարեան ճեմարանի տպարանը։ Մ. Նալբանդեանց առաջին տարիները գըլ-

(Համբաւ. Ռուսիոյ 1860, Թ. 1)։ Վճիռ Էջմիածնի Սինօդին (Արշալոյս Արարատեան 1863, Թ. 667)։

*խաւոր աշխատակիցն էր. իսկ վերջին տարիները Նազարեանց գրեթէ առանձին էր մնացած։ Այս հինգ տարուան շրջանին մէջ Նազարեանցի յօդուածներուն թիւը հարիւրի մօտ են, բայց շատ սակաւ են ինքնագիրք. և որոնցմէ մի քանիին միայն իր նպատակին կը ծառայեն. կը յիշենք իբր ընտրելագոյնները Հայկական լեզուի խորհուրդը, Հայերի կոչումը մարդկութեան մէջ։ Նազարեանցի յօդուածներէն կը տեսնուէր, ինչպէս որ կը քննադատէ Երիցեանց, թէ Հայոց ժամանակակից կենաց ծանօթութիւն չունէր և Հայաստանի աշխարհագրութեան և պատմութեան շատ տեղեակ չէր. իսկ աշխարհաբար լեզուն՝ որուն ջերմ պաշտպանը հանդիսացաւ, թարգմանութեանցը մէջ չունեցաւ այն յստակութիւնը, որ իր ինքնագիր յօդուածոց մէջ հետզհետէ մշակուած կը տեսնուի։*

*Իւրիյ Վեսելովսկի հայագիտի կարծեօք, Նազարեանց իր ամբողջ կենաց մէջ մնաց գերմանական գիտութեան և գրականութեան երկրպագու և անդադար կ՚աշխատէր զանոնք իր ազգին վրայ պատուաստել։*

*Նազարեանցի ընդհանուր կեանքը ու գրուածները աչքէ անցընելով կրնանք խորհրդածել, թէ ունեցաւ եռանդուն սիրտ՝ որ*

գործելէն աւելի զգաց. Նուիրեց նա իր կեան-
քը ու գրիչը առանց կարող ըլլալու գրա-
կան կոթող մը տնկել. աշխարհաբարի գրո-
ղը ձեռքը՝ մտաւ ասպարէզ, թարգմանական
քանի մը աննշան գործեր հետոցը վրայ
թողլով, որ իր հանած կռիւներու փոշւով
ծածկուեցան։ Հիւսիսափայլը միայն մնաց
Նազարեանցի անուան իբրեւ պսակ. անով
որոտեց շանթերուն յոյսը, անով իր տաքուկ
ու օգնելու կարօտով բաբախող սիրտը յայտ-
նի ըրաւ, անով հանեց կրկին բանակներ,
մին բարեկամ, միւսը՝ թշնամի. առաջին-
ները գովութեանց խունկերով պատեցին իր
յիշատակը, երկրորդք՝ իրեն հարուածներուն
տակ աւելի զօրացան զինքը ատելու։ Հիւսի-
սափայլ՝ ռուսահայոց լեզուին բեւեռային
աստղն եղաւ. և Նազարեանց՝ հաւատարիմ
իր անկեղծ համարձակութեան, թշնամի՝
նախապաշարմանց և յետամնաց հայեացք-
ներու, քարոզեց թէ կարելի է մէկ ազգ ըլ-
լալ թէպէտ կրօնքով բաժնուած, թէ կարեւոր
գրական և գիտական ընկերութիւններ
ազմել, դաստիարակել, թէ պէտք է տգէտ
կղերցականաց ազդեցութենէ ազատ մնալ
առաջադիմելու համար։

# ՄԻՔԱՅԵԼ ՆԱԼԲԱՆԴԵԱՆՑ

**1830–1866**

---

Ստեփանոս Նազարեանցի *անունէն անբաժան կայ ուրիշ անուն մ'ալ, որ հաւասար փայլն ունի, որ ռուսահայոց մէջ աշխարհաբարը կանգնելու գործին մէջ միասին աշխատած ու կռուած է, որ քան զայն աւելի գործունեայ և աւելի մեծ փոթորիկ հանած է. իր սուղ կենաց մէջ շատ գործեց, շատ գրեց, շատ ալ մխճեց: Նա, որոտաց մեր ազգային երգերէն ամենէն վառվռուն բոցաշունչ «Ազատ Աստուածն» որորոցի կաշկանդեալ մանկան երգը, և Գամառ–Քաթիպայի «Հիմի էլ լռենք» ոտանաւորի նմանութեամբ, կրակոտ ու բանաստեղծական երգ մը «Հիմի էլ խօսենք». Նա Իտալացի աղջկան բերանն դրաւ իր «Մեր Հայրենիք»ի յուզող ու կիզող ազգային քայլերգը*

և Թարգմանեց ազգատ կնոջ սրտաշարժ ողորմութիւն արէք «Ցուրտը փչեց»ը. Նա մեր գրականութիւնը իր երգերով ճոխացնող Նալբանդեանցն է, որ երբեմն Կոմս Էմմանուէլ, երբեմն Փառոխ Ցոլակեան և Սիմէոն Մանիկեան ծածկանուններով գրական համաստեղութեանց մէջ կը փայլատակէր[1]։

Ծնաւ ի Նոր-Նախիջեւան[2], ութը տարեկան՝ տիրացուի մը քով կարդալ գրել

1. Կենսագրական տեղեկութիւններ քաղեր ենք Եր. Շահազիզի «Մ. Նալբանդեանց», ընտիր կենսագրութենէն. — Աբ. Յ. Այվազեանի կենսագ. Բ. հատորէն «Մ. Ղազարեան Պայտարեանց». — Հմմտ. Տարազ, Իլլիւստրասիոն, 1900 Թիւ 47. — Վտակ Վ. Փափազեանի. էջ 378։

2. Այն տունը որուն մէջ ծնած, սնած ու անցուցած է Միքայէլ Նալբանդեանց իր մանկութեան օրերը, կը գտնուի Նոր-Նախիջեւանի Ս. Համբարձում թաղի 26 գծի վրայ։ Կղմինտրեայ տանիքով, չորս սենեակէ բաղկացած մի յարկանի շինութիւն է, որ այժմ կը պատկանի իր եղբօրորդիներուն։ Տունը որ փոքրիկ բակ մ'ունի ու բակի կողմէն փոքրիկ պատշգամբ մը, հիմայ արդէն հնցած է և չնչին գնով վարձքի կը տրուի։ Պատկերիս վրայ Նալբանդեանցի տունը լուսանկարուած է փողոցէն։

*սորվելէն վերջ, Տէր–Գաբրիէլ Պատկանեանի դպրոցը մտաւ, ուր գտաւ իր ազգային գործին զուգակից հանճար պաշտնեաներն, Գամառ–Քա-*



ՆԱԼԲԱՆԴԵԱՆՑԻ ՏՈՒՆԸ

*Թիպան. Հինգ տարի աշակերտ ըլլալով, աւարտեց ուսումը և հայերէն լեզուի ու պատ-*

*մութեան բաւական հմտութիւն ամբարեց։ Այդ ուսումնական ընթացից լրանալէն վերջը, նոյն ատենուան սովորութեան համեմատ*



ՄԻՔԱՅԷԼ ՆԱԼԲԱՆԴԵԱՆՑ

*արհեստի մը հետամուտ չեղաւ, այլ իբրեւ Տիրացու շարունակեց եկեղեցւոյ մէջ ծա-*

ռայել, լաւ գիտէր շարականները։ 1847ին երբ Մատթէոս Վեհապետեան արքեպիսկոպոսը Նախիջեւան եկաւ, տիրացու Միքայէլը՝ խելացի ու սրամիտ պատանին, անոր ուշադրութիւնը գրաւեց. և Տէր–Գաբրիէլի միջնորդութեամբ անոր քով ստացաւ քարտուղարութեան պաշտօնը, որ իր գործօն և միանգամայն աշխոյժ բնաւորութեան համար համեստ ասպարէզ մ'էր. և այդ պաշտօնին շնորհիւ սկսաւ ուսումնասիրել հայ հասարակութեան կեանքը։ Խալիպեան կռուին (եկեղեցական դրամոց) ամենէն ջերմ հակառակորդն եղաւ և այդ պատճառաւ հոգեւորականներէ խզեց իր յարաբերութիւնքը ։ 1853ին Էջմիածնայ հրաւէրքին ուշ չի դրաւ, այլ իր ուսմանց կատարելագործութեան համար Մոսկուա դիմեց, հոնկից անցաւ ի Պետըրբուրգ, ուր յաջող քննութիւն տալով, Հայերէնի ուսուցչութեան վկայականը շուտով ձեռք ձգեց Խաչատուր Աղա Լազարեանի օգնութեամբ, դարձեալ ասոր պաշտպանութեամբ՝ Մոսկուա եկաւ, և Լազարեան ճեմարանի առաջին երեք դասարաններու մէջ Հայերէնի ուսուցչութեան պաշտօնը վարեց։ Նոյն ատենները Մոսկուայի հայ ուսանողութիւնը կը կրէր երեք մեծ վարպետներու

Էմինի, Մսերի և Նազարեանցի ազդեցու-
թիւններն. Նալբանդեանց միանալով Նազա-
րեանցի ազատամիտ գաղափարներուն, պար-
զեց աշխարհաբարի պաշտպանութեան դրօ-
շակը. և ամէն ռուսահայ նոր գրիչ նոյն
ատենէն մինչեւ ցայսօր «Հիւսիսափայլ»ի
այդ երկու նշանաւոր խմբագիրներու ուղղու-
թեան հետեւելով ունեցան այն աշխարհա-
բարը՝ զոր կը գործածեն։ Նալբանդեանց ու-
սուցչութիւնը չկրցաւ երկար շարունակել.
թշնամեաց հալածանքը ետեւէն կը վազէր.
մտաւ բանտ, մինչեւ որ Նազարեանցի և
այլոց երաշխաւորութեամբ կրցաւ ազատիլ.
սակայն տուաւ ուսուցչութեան իր վերջին
ողջոյնը։ Մինչեւ 1859 Մոսկուա կեցաւ,
ուր ընդարձակեց իր գաղափարները և գի-
տութիւնները, և հոն Նազարեանցի Հիւսի-
սափայլին ամենէն կորովամիտ թիկունքն ե-
ղաւ։ Վերջապէս առողջութիւնը խանգարուե-
լով՝ ելաւ հոնկից, հանքային ջրերու մէջ փըն-
տռելու իր բժշկութիւնը։ Այցելեց արտա-
սահմանի ամենէն լուսաւորեալ միջավայրերը.
Պեռլին, Վեննա, Համպուրկ, Փարիզ, ուր ծա-
նօթացաւ մասնաւորապէս Ստեփան Ոսկա-
նեանի, Արեւելքի ու Արեւմուտքի ծանօթ
խմբագրին և անկից անցաւ Լոնտրա, և վեր-

ջապէս վերադարձաւ ի Պետրբուրգ, ինչպէս մի նամակի մէջ կը գրէ, «Արեւելեան լեզուագիտութեան կանդիդատի քննութիւն տալու, որպէս զի արժանաւոր տեղ ծառայութիւն գտնելով, կարողանամ օրական ապրուստ ճարել և բժշկութիւնը շարունակել»: Քիչ ատենէն Բաբաջանի կտակի խնդրոյն համար գնաց ի Նախիջեւան. և այդ ծանր գործը յաջողցնելու համար ճամբայ ելաւ դէպ ի Հնդկաստան, նախ անցաւ ի Պօլիս (1860), ուր Պօղոսեանց և Ապօղոսեանց կռուին խառնուելով, Մեղուի մէջ խայթող ու սուր գրութիւններ թողուց «Հրաշափառ խայտառակութիւն» խորագրով. յետոյ Փարիզ ուղեւորելով գրեց հոն «Երկու տող» վերնագրով գրքոյկը Գ. Այվազեան Սրբազանի դէմ. անցաւ ի Լոնտրա և հոնկից ի Կալկաթա, 70 տարուան մեռած կտակ մը կենդանացուց շատ նեղութիւններով և ահա այդ գումարով Նոր-Նախիջեւանի Սահակ-Մեսրոպեան Դպրոցը կառուցուեցաւ: 1862ին Կալկաթայէն դարձաւ Պետրբուրգ, և սկսաւ պատրաստութիւն տեսնել հին Հայաստանի քարտէզը տպագրելու, և շուտով Նախիջեւան գալով, երբ ճամբորդութեանը հաշիւը կ՚ուզէր ազգայնոց ներկա-



Ն.ԱԼԲԱՆԴԵԱՆՑԻ ՇԻՐԻՄԸ

յայտնել, յանկարծ տէրութեան ձեռքով բըռնուեցաւ ու Պետերբուրգ ղրկուեցաւ։ Այդ առանձնութեան մէջ անցուց այլ եւս կենացը վերջին տարիները, մխիթարելով թշուառ օրերը անընդհատ գրական զբաղմունքով, և այդ երեք տարուան աշխատութեան արդիւնք է իր գրուածոց մեծ մասը, որոնք բոլորովին ուսումնական են. Նալբանդեանցի արիւնը ալ եւս չէր եռար, նա փոխուեր էր։ Այսպէս երբ մէկ կողմանէ գրաւոր վաստակներ կը կանգնէր, միւս կողմանէ՝ իր հին հիւանդութիւնն ալ կ'արթննար. թոքախտը արագ արագ կը հիւծէր կը մաշէր անոր փափուկ կազմուածքը։ Նա ստիպուեցաւ խնդրագիր ուղղել, թողլու համար մայրաքաղաքը և հիւծած չորցած՝ շունչ, կեանք փնտռել Սարատովի Կամիշին քաղաքը, ուր հետզհետէ սպառեցաւ և մարեցաւ Հայ կենաց այս նոր մտքի բոցը, 1866ի մարտի 31ին։ Մարմինը մեծ հանդիսով փոխադրեցին Նոր-Նախիջեւանի սուրբ Խաչ վանքը, որու բակին մէջ, բարձրաւանդակի վրայ, զանգակատան և եկեղեցւոյ հարաւային դրան անկիւնը բարձրացած է իրեն գերեզմանին հողաբլուրը [1]։

1. Գերեզմանին վրայ կանգնուած է պարզ չիրիմ մը, որ ձուլուած է Թուջէ և դրուած է

Նալբանդեանցի գրական երախայրիքը բոլորովին անյաջող է, անհամ և անոճ երկու գրաբար և մէկ աշխարհաբար ոտանաւորներ են, հրատարակուած Արարատ շաբաթաթերթի մէջ. քսանամեայ պատանին կը յայտնէ հոն իր կրթութեան կարօտ մտքին աստիճանը։ Ութը տարի ետքը Հիւսիսափայլի մէջ սրբեց այդ արատը ընտիր և ճաշակաւոր բանաստեղծութիւններով, որոնք կէս մը թարգմանութիւն են և կէս մը ինքնագիր[1]։ Նոյն ամսաթերթի մէջ գիտական և խայթող շատ մը յօդուածներ ալ ունի, որոց գլխաւորներն են. Յիշատակարան Կոմս Էմմանուէլի օրագրական թերթերից. Միխիթար և մխի-

աւազաքարէ շինուած պատուանդանի վրայ։ Գերեզմանի չորս կողմը քաշուած է ամուր վանդակապատ։ Մէկ կողմը արձանագրուած է «Աստ հանգչի մարմին Միքայէլի Ղազարեան Նալբանդեանց ծնեալ, ի 27 հոկ. 1830 ամի, վախճանեալ ի 1866 ամի 31 մարտի». միւս երեսը, «Կանգնեաց տապանս այս քոյր հանգուցելոյն Մահտեսի Վառվառէ Մեսնիքեան»։ Երրորդ և չորրորդ երեսներու վրայ գրուած է ռուսերէն։

1. Երազ. Յիշենք. Գարնանամուտ. Հայ մարդու հայրենիքը. Առօրեայ աշխարհ. Վայր ընկնող աստղեր (թարգմ.). Լուսին (թարգմ.). և այլն։

թարգմանք. Մեռելահարցուկ. քանի մը քննադատութիւններ. Թարգմանութիւններ Ֆապր տ'Օլիվիէի՝ Թռաշիխմանճներ. Քլեման Ռոպէրթի՝ Դիքսուհի տը—Շեվրէօզ։ Նալբանդեանց առհասարակ կծու և ծաղրական լեզու մը կը գործածէր, որով շատ անգամ իր բարեկամներն ալ կը վիրաւորէր. երախայական կիրքն ալ երբեմն իր գրուածոց մէջ մեծ դեր կը խաղար։ Իւրի Վեսելովսկի հայագէտի կարծեաց համեմատ, Նալբանդեանց «Թաց տիպական արեւմտապաշտ։ Իր ոտանաւոր փորձերում, որ աւելի ցած են քան նրա հրապարակախօսութիւնը, նա ցոյց է տալիս յաճախ Բերանժէի ազդեցութեան տակ լինելը, որի երգերը նա թարգմանում ու վերաշինում էր[1] »։

Բաց ի վերոյիշեալ գրուածներէն, Նալբանդեանց ունի վէպ մը Միհրին խօսք, միջաին Հայրս տիտղոսով, տպուած առանձին գրքով 1857ին. նոյն թուականին է դարձեալ Եւժեն Սիւի՝ Թափառական Հրեայ թարգմանութեան Ա մասն, հանդերձ ընդարձակ յառաջաբանով մը Ցիսուսեանց վրայ։ Իսկ մահուընէն վերջ հրատարակուած է. «Ղազար փարպե-

1. Հմմտ. Վտակ Վ. Փափազեան, էջ 378։

ցուց թուղթը, թարգմանութիւն աշխարհաբար և բացատրութիւնք»․ Թուղթս առաջին անգամ տպուեցաւ 1853ին Մկրտիչ Էմինի ձեռօք, և Նալբանդեանց կը քննադատէ անոր սրբագրութիւնքը, տուած քանի մը ծանօթութիւնքը և գրած յառաջաբանութիւնը, 77 գլուխ ներհուն, լուսաբանիչ և հարուստ բացատրութիւններով։ Միքայէլ Միանսարեանց սոյն արդար գովեստը կու տայ գրքիս․ «Այս աշխատութիւնը իւր լեզուի պարզութեամբ, կանոնաւորութեամբ, ոճի գեղեցկութեամբ, և զանազան քննողական ծանօթութեամբ պիտոյ է համարիլ հանգուցեալի գրաւոր աշխատութեանց պսակը»։ Նալբանդեանցի գրութիւններէն ոմանք ալ հետզհետէ լոյս տեսան Գրակ․ և Պատմ․ Հանդէսի մէջ․ տասնէն աւելի բանաստեղծական ոտանաւորներ տպուած Բ․ Գ․ Դ․ հատորներու մէջ, տաղանդաւոր մատենագրին արժանիքը կը յայտնեն․ դնենք հոս քանի մը տող իբրև ճաշակ իր աշխարհաբարին, որ ռուսահայ գրիչներու մէջ ամենէն աւելի ընտիրն ու ներդաշնակն կը համարուի,

«Իստակ ջուր վազուկ, արդեօք ի՞նչ կլինէր,
Որ քո ալիքներ տանէր իմ ցաւեր,
Կամ ի՞նչ կլինէր, թէ իմ վիշտ ու լաց
Ինչպէս ծուխ օդում ցրուէին յանկարծ։

*կամ ինչո՞ւ համար ուրախութիւնը*
*Թռչում է շուտով, մընում է ցաւը.*
*Թո՛ղ քո ալիքներ ցնդեն իմ վշտեր,*
*Լուանան սիրտս թո՛ղ քո մանրիկներ»։ . . .*

Նոյն Հանդէսի մէջ (հտ. Բ) կը գտնենք Երկու խօսք և Յառաջաբանք տիտղոսով յօդուածներ, Հիւսիսափայլ թերթին լեզուն պաշտպանելու նուիրուած։ Երկար մատենախօսական մը Պերճ Պռօշեանցի Սօս և Վարդիթեր վէպին վրայ (հտ. Գ). և ընդարձակ յօդուած մը Յաղագս հայկական դպրութեան ճառ վերնագրով (հտ. Դ)։ Ծաղրերգութիւն մ՚ալ հրատարակուած է Փորձի մէջ (1881, Ե) Սատանայի պաշտօնական մեծ հանդէսը անունով։ Անտիպ աշխատութիւններէն յայտնի են. Փորձ արդի աշխարհաբառ լեզուի քերականութեան, զոր կենացը վերջերը յօրինել սկսաւ, և կարող չեղաւ ամբողջացնել, մինչեւ բայերը հասուցած է, և որու համար նամակի մը մէջ կ՚ըսէ, քանի մը գրքեր և բառարաններ խնդրելէն վերջ, «թէ այս իմ ձեռնարկութեան համար շատ քիչ նիւթեր կան», և «լեզուի վրայ քննութիւն եմ գրում, յիշողութեանս և քսան տարւայ գործունէութեան շնորհքով, որ դարձեալ բաւական չէ»։ Քանի մը թերթեր կա-

րած են այս գնահատելի գործէն։ Ունէր կիսատ Շերամագործութիւն անուամբ երկասիրութիւն մը՝ զոր մտադիր էր տպագրել հանգուցեալ Միքայէլ Տէր–Գրիգորեանց, լրացնելով զայն և կարգաւորելով։ Այցմիք, գրաբար բանաստեղծութիւններ, որոց մէջ ամենէն նշանաւորն է եղեր Արկածք Ադամայ քերթուածը։ Աստուածաշնչի համեմատութիւններ, յունարէնի և եբրայեցերէնի հետ բաղդատուած, որոց համար կ'ըսէ Տէր–Գրիգորեանց, «որ կտոր կտոր թղթերի վրայ է գրած և մի ամբողջ շարադրութիւն չէ»։ Ֆիզիկա – փիլոլոգիական – պատմաբանական – աշխարհագրական ներածութեան նիւթեր, որուն վրայ աշխատիլը կը ծանուցանէ ինքը Նալբանդեանց առ եղբայրն գրած նամակի մը մէջ, ըսելով «Ես պատրաստում եմ մի մեծ գործ, որի նման բան դեռ եւս չէ եղած. Ես այս գործի մէջ Բեօքլին եմ պարտական, նորանից ուսայ։ Բայց այդ նիւթերը դեռ եւս ցրուած են, պատճառ, ես առանձին դրութեանց վրայ առանց կարգի եմ գրում»։ Յիշենք վերջապէս Քիմիայի համառօտութիւնը որ նոյնպէս կիսատ մնացած է, և Կիրակոս Գանձակեցի վերնագրով յօդուած մը։

Նալբանդեանց իր կարճատեւ կենօք այլ

բազմատեսակ գրուածներով, կը ներկայանայ մեզ իբր հրապարակախօս և իբր մատենագիր նշանաւոր դէմք մը ։ Հիւսիսափայլի և Մեղուի մէջ երբ կրակոտ և կրքոտ ճարտարխօսութեամբ մէկուն ջատագով ուրիշի մը ոսոխ կը հանդիսանայ. երբ մանաւանդ ազգային սիրով լեցուն՝ ոգիտութեան դէմ ձայն կը բարձրացնէ, ախտերը կը հարուածէ, լուսաւոր ճամբայ կը գծէ, գերազանց հրապարակախօսի մը ամէն յատկութիւնները կը ցուցընէ։ Իբր մատենագիր ոչ նուազ փայլ ունի Նալբանդեանց. նա թէպէտ ոչ բանաստեղծ է ոչ բանասէր, ոչ քերական և ոչ վիպասան, ոչ բնագէտ և ոչ լեզուագէտ, սակայն այս ամէն ճիւղերէն ալ ճաշակ տուաւ, յաջողակ գրչի մը համբաւոյն արժանանալով։ Հարկ է խոստովանիլ թէ աշխարհաբարը ռուսահայոց մէջ ինքը զարգացուց, Հիւսիսափայլի եռանդուն աշխատակցելով. և քանի որ Նալբանդեանցի յօդուածները կ'ոգեւորէին այդ թերթը, ընթերցող երիտասարդութիւնը անյագ կը կարդար անոր ընդարձակ էջերը ։ Նալբանդեանց գրական ասպարէզին մէջ ծագեցաւ կարմիր արշալուսով, բայց աւաղ որ դեռ գագաթնակէտը չտեսած՝ խոնարհեցաւ, անողորմ հիւծախտի թանկագին զոհ մ'ըլլալով։

# ԳՐԻԳՈՐ ԱՐԾՐՈՒՆԻ

**1845–1892**



ՆՇԱՆԱՒՈՐ՝ *տոհմային ազնուութեամբ և հռչակուած՝ իբր պարագլուխ հրապարակախօս գրիչներու մէջ, քառորդ դար մը իր հզօր ազդեցութեան տակ կառավարեց, լուսաւորեց, ցնցեց ժողովուրդը. ցանեց իր մտքին սերմերը համարձակ, յանդուգն ազատամտութեամբ, և ինքզինքը իրաւամբ ցոյց տուաւ մշակ՝ ազգային կրթութեան խոպան դաշտին մէջ։*

*Գրիգորի պապը Գէորգ Արծրունի, Վանէն գաղթելով Թիֆլիզի մէջ հաստատուած էր*[1]*. Եւրոպայի մեծ քաղաքներն ալ պտը-*

1. Կենսագրական տեղեկութիւններ առած ենք հետեւեալ գրքերէն և թերթերէն, Ա. Ե-

տած, վաճառական, հարուստ և լուսաւոր մարդ էր. Ամսդերտամէն հայերէն տառերու մայրեր բերելով, Թիֆլիզի մէջ առաջին տպարանը հաստատած և տպած էր իր «Դարաստան խրատուց» գիրքը: Գրիգորի հայրն ալ՝ Երեմիա Արծրունի, քաղաքական պաշտամանց մէջ նշանաւոր, խիստ բնաւորութեամբ և պատկառելի անձ էր։ Որդւոցը մէջ բաց ի Գրիգորէն, Անդրէաս Արծրունի եւս նշանաւոր եղաւ իր բնագիտական հմտութեամբ [1] ։

րիցեանց «Նիւթեր Հայոց պատմութեան համար. Ա. – Գ. Արծրունու և նրա քսանը հինգ տարւայ գրական գործունէութեան առիթով». 1890: — Խ. Մալումեան «Մաքի Մշակը. Գ. Արծրունու գրական գործունէութեան 25-ամեակի առիթով». 1890: — Մշակ, 1892: — Տարազ, 1892:

1. Ծնաւ 1847 թուականին՝ Նոյեմբեր 15ին ի Մոսկուա. 1868ին աւարտած է Պետերբուրգի համալսարանական ընթացքը, և մտած է Հայդելպէրկի համալսարանը, 1870ին քիմիայի վարդապետական քննութիւնը տուած է. 1873ին Վենետիկ գալով, Հ. Ալիշանէն կը հմտանայ իւր սիրած հայերէն լեզուին. 1875 — 1877ի ժամանակամիջոցին Ստրասպուրկի մէջ աշխա-

*Գրիգոր Արծրունի Մոսկուայի մէջ ծնաւ 1845ի փետրուար 27ին. հարուստ ընտանեաց զաւակ՝ դաստիարակուեցաւ և տնային վարժապետաց ձեռքին մէջ սնաւ։ Տասը տարեկան՝ մօրէն զրկուած՝ հօրը հետ Գերմանիա ուղեւորելով, լատիներէն և գերմաներէն դասեր առաւ, գաղղիերէնն ալ մանկութեան օրերուն մէջ սորվեցաւ դեռ ուսումնարան չմտած։ Կը պատմուի թէ, դեռ երախայ՝ Մոսկուայի մէջ, փոքրիկ Գրիգորը*

*տենդ կ'ըլլայ. 1877 – 1883 Պեռլինի ամենէն հռչակաւոր համալսարանի տնտեսական ուսուցիչ կ'ընտրուի. 1883 – 1884 կը վարէ Պրեզլաւի համալսարանի մէջ արտաքոյ կարգի Պրոֆէսորութեան պաշտօն. 1884 – 1893 Ախէնի բարձրագոյն արուեստից վարժարանին Պրոֆէսորութիւն կ'ընէ։ 1894ին հայրենի և նուիրական լերան՝ Արարատայ վրայ կը բարձրանայ՝ իւր սիրելի հայրենեաց հանային թաքուն գանձերը և խաւերը հետազօտելու համար. բայց ալեւոր սարին խիստ կլիման՝ չի խնայեր, այլ անգութ և մահացու հարուածով՝ բնիկ հետազօտչին թոքերը կը վիրաւորէ։ 1896ին՝ յԱմերիկա գիտական ճանապարհորդութեան մէջ՝ երկրորդ անգամ թոքերը կը վնասուին. վերջապէս՝ ի սէր երկրաբանական գիւտերու, 1897ին*

Տասն և ութ տարուան աւարտեց գիմնազիան, յաջորդ տարին Մոսկուայի համալսարանին բնագիտական բաժինը մտաւ, և տարի մը ետքը Պետրբուրգի համալսարանին մէջ նոյն ճիւղը շարունակեց։ Հոն



ԱՆԴՐԷԱՍ ԱՐԾՐՈՒՆԻ

կանչեց նաեւ իր Անդրէաս եղբայրը, և նոյն ատեն մայրաքաղաքին մէջ հայ երիտասարդ ուսանողաց բաւական մեծ խումբ մը ձեւացած էր, որոնց մագիստրոս Կարապետ Եզեանց բացած իր դռները, սիրալիր ընդունելութեամբ կը մոռցնէր իրենց պանդխտութիւնը։ Պետրբուրգ կը գտնուէր նոյն ժա-

*մանակ երիտասարդ Գամառ–Քաթիպա և իր ծերունի հայրը։ Գրիգոր Արծրունի ընտանեցաւ հայ խումբին, և ալ եւս հայ ըլլալուն վրայ առաջուան պէս չէր ծիծաղեր։ Նոյն տարուան մէջ, 1865ին, առաջին անգամ գրել սկսաւ Մեղու Հայաստանի լրագրին մէջ, և տարւոյն վերջը հիւանդութեան պատճառով Նիցցա գնաց, և հոն ձմերելով անցաւ ի Զուիցերի, ուր նախ Ցիւրիխի և յետոյ Ժընէվի համալսարաններուն մէջ ազատ ունկնդրութիւն կ'ընէր. և ինչպէս կը տեսնուի իր յօդուածներու տակ նշանակած թիւերէն և քաղաքներէն, նա շարունակեց այս տեղերէն աշխատակցիլ Մեղուի և Հայկական աշխարհի։ 1867ին իբր ուսանող մտաւ Հայտէլպէրկի համալսարանին փիլիսոփայական բաժինը, իրեն մասնաճիւղ ընտրելով քաղաքատնտեսական գիտութիւնները, և երկու տարի վերջ քննութիւն տալով, ստացաւ ուսուցչի վկայականը։ Նոյն տարին Փարիզ երթալով, հոն սեղի համալսարանի մէջ ալ մի քանի ամիս լսեց քաղաքատնտեսական դասախօսութիւններ։ Փարիզէն Արծրունին եկաւ Վիեննա, ուր ամբողջ ձմեռ մը անցուց, մէկ կողմէն Մխիթարեանց քով հայերէն սորվելով, միւս կող-*

մէն համալսարանին դասախօսութեանց հե-
տեւելով։ 1870ին Վենետիկ գալով, ուզեց կատարելագործել իր մայրենի լեզուն, վեց ամիս Հայերէնի դաս առաւ, Ուխտիս Աբբա-հայր Գերպ. Իգնատիոս Կիւրեղեանէ, նոյն ատեն ուսումնապետ Մուրատ–Ռափայէլեան վարժարանի. իսկ տեսչութիւնը Հ. Ղ. Ա-լիշանի ձեռքն էր. և Արծրունի երկար ատեն վայլեց անոր ներկայութիւնը։ Վենետիկէն վարադարձաւ Հայտէլպէրկ, և տարի մը հա-մալսարանին մէջ դարձեալ քաղաքատնտե-սական դասախօսութեանց ունկնդիր եղաւ։

1871ին Արծրունի դարձաւ ի Թիֆլիզ, ուր ժամանակ մը, առանց վարձատրութեան դասատուութիւն ըրաւ Հայոց օրիորդական դպրոցներուն մէջ, և նոյն իսկ քիչ մը ա-տեն Գայիանեան և Մարիամեան դպրոցնե-րու տեսչի պաշտօնը վարեց։ Մի և նոյն ժամանակ կը շարունակէր գրել Մեղուի մէջ «Նեօբէ» ստորագրութեամբ, իսկ Հայկական աշխարհ և Պոլսոյ Մասիս լրագրաց մէջ ու այլ և այլ ռուսերէն և Վիեննայի "Journal d'Orient„ լրագրաց մէջ իր ստորագրու-թեամբ կը գրէր։

Վերջապէս 1872ին հիմնեց Արծրունի Թիֆլիզու մէջ Մշակ լրագիրը որ առաջ շա-

բաթաթերթ էր, 1876էն սկսեալ շաբաթը երկու անգամ կը հրատարակուէր, իսկ 1878ին ամենօրեայ դարձաւ, շաբաթը հինգ անգամ հրատարակուելով։ 1884ին ընդ-միջեց և Ջուիցերի գնաց քայքայուած առող-ջութիւնը հաստատելու, հոնկից կը գրէր Կ. Պոլսոյ Արեւելք լրագրին։ Տարի մը վերջը Թիֆլիզ դառնալով 1886ին նորէն սկսաւ հրատարակել Մշակը որ ինն ամիս միայն ընդհատեցաւ մահուանէն վերջ։ 1889ին Թիֆլիզի հասարակութեան կողմէն Փարիզ գնաց ներկայ ըլլալու «Գրողներու ժողով-քին»։ Իր գրական գործունէութեան քսան և հինգամեակի տօնիւ, 1890 մայիս 6ին, փառաւոր յոբելեան մը կատարեց հայ հա-սարակութիւնը իր մեծ հրապարակախօսին։ Մեռաւ երկու տարի ետքը դեկտեմբեր 19ին, Թոքախտի՝ իր հին հիւանդութեան, կար-ճատեւ հարուածով մը։

Իննեւտասներորդ դարու գրականական շարժման մէջ, մեծ դեր խաղաց Արծրունին իր Մշակով. նա եւրոպական գաղափարնե-րով զեղուն, չկրցաւ գոհանալ երկրորդական միջոցներով հաղորդել իր լուսաւոր միտքը, նա պէտք կը զգար գործել, և ազդու ոճով։ Արդէն իսկ իրեն յատուկ բեմ մը, առանձին

լրագիր մը հրատարակելու գաղափարը արտասահմանի մէջ յղացած էր. սակայն պէտք էր շատ դժուարութեանց յաղթել։

Լրագրութիւնը նոյն ժամանակ ամենէն ստոր գործն էր դարձած, հայ լրագիրը բարձր դասուն համար չէր, անպատուութիւն էր հայերէն թերթ ձեռք առնուլ, հասարակ ժողովուրդը չունէր բաւական գիտութիւն կամ չէր հետաքրքրուեր անօգուտ խնդիրներով. լրագիր մը հազիւ ծլած կը թառամէր, նոյն իսկ գիտուն խմբագրի մը ձեռքին մէջ. դայս չի՞ հաստատեր Հիւսիսափայլի և այլ շատ մը թերթերու շուտով անյայտանալը։ Արծրունիի լրագիր հրատարակելու գաղափարին խոչընդոտն եղաւ իր հայրը։ Ցարաբերութիւնք շուտով կտրուեցան իրենց մէջ, Գրիգոր ըմբոստացաւ, լրագրական աշխատանքը հրատապ էր, յամառ մնաց իր գաղափարին մէջ, որով զրկուեցաւ նոյն իսկ հօրը նիւթական օգնութիւններէ. երկար ատեն 100 րուբլի միայն կը ստանար ամսէ ամիս։ Սակայն այս ո՛չինչ։ Նա կը նետուի լրագրական ասպարէզ, ուր քաջագործութեան պէտքն կը զգար։ Պէտք էր կռուիլ ժողովրդեան արիւնը ծծող մոլեռանդութեան, տխմարութեան դիակնացեալ ոգւոյն հետ։ Կը գրէ

Բաֆֆի. «Ես երբէք մոռանալ չեմ կարող 72 Թուականը՝ երբ սկսվեցաւ հրատարակվել «Մշակ» լրագիրը։ Ի՞նչ կեանք էր տիրում այն ժամանակ Թիֆլիզում. Ի՞նչ դրութեան մէջ էր գաւառների վիճակը։ — Ամեն տեղ տիրում էր մի տեսակ անշարժութիւն, մի տեսակ թմրութիւն, մի տեսակ մեռելութիւն։ Յանկարծ, կարծես մի դիւթական գաւազանի հարուածից, զարթեցաւ կեանքը։ Ոչ ոք չէր հաւատում, թէ այդպէս կարող էր լինել։ Հաւատում էր միայն երիտասարդների մի փոքրիկ խումբ։ Ես յիշում եմ այն գեղեցիկ տարիները, այն հրաշալի գիշերները, երբ այդ խումբը հաւաքուած խմբագրատան մէջ, կարդում էին, ծխում էին և վիճում էին։ Մեզանից շատերը հագնելու շապիկ չունէին, մնում էին այնտեղ բոլորովին պատառոտած կօշիկներով. այսու ամենայնիւ, մենք ամենքս էլ ֆատալիստի յուսով հաւատում էինք, թէ կը տիրապետենք մի մեծ ապագայի...։

Ես երբէք չեմ կարող մոռանալ այն աղմկալի ժողովները, որ կազմվում էին այդ լրագրի խմբագրատան մէջ մի քանի տարի առաջ։ Եթէ ես ունեցել եմ իմ կեանքում մի քանի ոսկի րոպէներ — դրանք պատկա-

նում են այն ժամանակին։ Ժողովների մէջ ոգեւորված և բորբոքված վիճաբանութիւնները տեւում էին շատ անգամ մինչեւ գիշերվայ ժամը երկուսը...»։

Այսպէս ահա սկսաւ Արծրունիի լրագրական գործը։ Մշակի հրատարակութենէն ամիս մ'առաջ հանեց համեստ յայտարարութիւն մը. ուր ոչ մէկու վրայ շանթեր կ'որոտար, և ոչ մեծամեծ խոստումներ կ'ընէր. այլ պարզապէս թէ «Պէտք է մշակել, պէտք է աշխատիլ, աշխատի՜նք»։ Ժողովուրդը յայտարարութեանց շատ ականջ չի կախեր, և ոչ Արծրունւոյ անունէն ձգուեցաւ. 50 բաժանորդ նորածին Մշակը կը քաջալերէին. անոր բովանդակութիւնը, հիմնադրին առաջնորդող յօդուածները, կարելի չէր որ հասարակութիւնը անտարբերութեան մէջ թողուլին, տարին չբոլորած Մշակ կարդացողները 500 եղան։

Մշակի առաջին համարներէն տեսնուեցան Ջաքուճի (Ամերիկեան) սրամիտ ֆելիետօնները, Րաֆֆիի Պարսկաստանի հետաքրքրական նամակները, որոնց տակ կը ստորագրէր Ալէքսանդր Րաֆֆի, Ծահմերախեանի՝ ներքին կեանքի վերաբերեալ տեսութիւնները, Պահլաւունւոյ (Պերճ Պռօշեանի) Երեւա-

նեան թղթակցութիւնները, Իզմայիլեանի՝ արտաքին տեսութեան գեղեցիկ յօդուածները, իրական կեանքէ առած՝ Զմշկեանի գրած պատկերները, Ալէքսանդր Քիշմիշեանի վէպիկները, Համալի (Սունդուկեանի) ֆելիետոնները, «Համալի մասլահաթ» վերնագրով, Ստեփաննոս Պալասանեանի գրական և մատենախօսական յօդուածները, Անդրէաս Արծրունիի արտասահմանեան թղթակցութիւնները, և այլն։

Հետաքրքրական է թէ ի՛նչ կ'ըսէ Արծրունին առաջին յօդուածով, որու վերնագիրն է «Երէկ, այսօր և էգուց»։ Ի՞նչ էր երէկ հայ ժողովուրդը. — յեցած իրեն փառաւոր անցելոյն, առասպելական աւանդութեանց վրայ, գոհ էր փառասիրական զգացմամբ. իր տղոց հետ կ'աշխատէր մայրենի լեզուով չխօսիլ, նիւթական ո՛ր և է օգնութեան հասնելու կամք չունէր. ժողովուրդն ալ կը խնայէր կօպէկը իր երեխային համար հայերէն գիրք մը գնելու։ «Երէկվայ օրը անցաւ»։

Այսօր ամէն տեղ կը սկսին փոքր ի շատէ հայերէն սորվիլ։ Դպրոցներ կը հիմնուին, համալսարաններ կը յաճախուին, կենդանի լեզուով օրագիրներ և գրքեր ունինք. բանաստեղծութիւն, պատմութիւն երեւան կ'ելլան։

«Բայց էգուցվայ օրը մօտենում է»։

Վաղուան օրը կը պահանջէ փոքր սերըն-
դեան համար տարրական ուսում, ժողովըր-
դեան համար ժողովրդական գիտութիւն, ու-
սեալներուն՝ ճիշտ գիտութիւն, հասարակու-
թեան՝ ճիշտ գիտութեան վրայ հիմնուած
մտածելու եղանակ, — ամենուն աշխա-
տանք։

Ահա համառօտ յիշատակութիւն մը Արծ-
րունւոյ առաջին յօդուածին. սակայն կա-
րելի չէ մեր այս սուղ տեսութեան և կեն-
սագրականին մէջ մի առ մի հետևիլ իր
յօդուածներուն. Նա անընդհատ քսան տարի
գրեց, բեղմնաւոր միտքը չդադրեցաւ երբեք
իր սկսած գործին առջև. գեղեցիկ հատոր
մը պիտի ըլլայ Արծրունիի քսան տարուան
առաջնորդող յօդուածներուն հաւաքածոյն,
որուն գաղափարն ալ շատոնց մտածուած է։
Ջանանք ուրեմն աղօտ նկարագիր մը, ու-
րուագիծ մը տալ իր ընդհանուր գործունէու-
թեան հետևելով Խ. Մալումեանի գրուած-
քին։

Արծրունի շատ կանոնաւոր ոճով շօշափած
է ժողովրդեան և ազգին կարևոր խնդիր-
ները։ Որ և է գաղափար յայտնելէն առաջ,
հարկաւոր էր իրեն պարզել այն հարցը, թէ

ի՛նչ լեզուով պէտք է խօսիլ ժողովրդեան հետ, որ նա հասկընայ։

Լեզուի խնդիրը Արծրունիի գործունէութեան առաջին քայլին կը տեսնուի. բնական է թէ նա լեզուի կանոն տալու կարողութեամբ օժտուած չէր, յայտնի է դարձեալ թէ ժողովրդեան համար գրող Արծրունին պիտի հալածէր գրաբարը, սակայն աշխարհաբարն ալ մշակելու չունէր գիտութիւն. շատ անգամ իրեն դէմ ձայն բարձրացուցին եւրոպական բառեր և ռամկաբանութիւն գործածելուն համար։ Իսկ մայրենի լեզուն սորվեցնելու խնդրոյն ջերմ պաշտպաններէն մին հանդիսացաւ։

Երիտասարդ գիտնականներու գործունէութեան խնդիրը, Մշակի առաջին համարներէն կը սկսի, Արծրունի ուժգին կը խարազանէ սոյն դասակարգը որ իրենց ամբարած գիտութիւնը անգործութեամբ կը ժանգոտեն, և զիրենք բարձր համարելով, կը խորշին ժողովրդէն, մայրենի լեզուէն։

Ընտանիքի վերանորոգութեան համար պաշտպան եղաւ իւրաքանչիւր անդամոց իրաւունքին, բողոքեց ծնողաց իրենց որդւոց դէմ ըրած բռնութեան, և կանանց հարց խնդիրով, կնոջ հաւասարութիւնը և անոր

կրթութեան կարեւորութիւնը քարոզեց. ասոնց հետ Ապահարզանի խնդիրն ալ գրգռեց։

Գիւղացիական խնդիրը շատ անգամ շօշափեց Արծրունի եռանդուն յօդուածներով, ուսումնարաններու մէջ եւրոպական մանկավարժներու դրութիւնները մտցնելու, վարժապետանոցներ, արհեստագիտական դպրոցներ հիմնելու գաղափարները շատ անգամ կրկնեց։

Եկեղեցւոյ խնդիրը յուզեց այլ եւ այլ տեսակէտներով. օտար սկզբունքներ քարոզեց կրօնական ըմբռնմանց մէջ։ Սակայն սովորցուց կրօնքի համար չատել եւ չհալածել զիրար, նոյն իսկ օտարադեն այլազգւոյն բանալ իրեն դպրոցը, տարածել անոր վրայ ալ լուսաւորութեան խնամքը։

Տնտեսական խնդիրներով զբաղիլ զանց չէ ըրած Արծրունի. հայ գիւղացւոյն եւ արհեստաւորին լուսաւոր խորհուրդներ տալ, փոքրիկ դրամատուններու, խնայողական արկղի եւ այլ հաստատութիւններու առաջարկութեանց կը հանդիպինք իր յօդուածներուն մէջ։

Բայց ամենէն աւելի Թրքաց Հայաստանը Արծրունիի քննութեանց առարկան դարձած է, եւ Պոլսոյ մամուլը, գրականութիւնը եւ

Ազգային ժողովը իրեն խիստ դատապարտանքներուն ենթարկած է։ Ցիշենք Մշակէն արտատպած առանձին մի գիրքը «Թիւրքաց Հայերի տնտեսական դրութիւնը»։

Ուրիշ երկու գրքեր ալ ունի Արծրունի առանձին լոյս տեսած. «Այն տեղ և այս տեղ, ուսանողական տպաւորութիւններ», 1890ին տպուած. և «Էմիլիա Հոգեբանական էդիւտ, հայերէն մի անտիպ ձեռագրից», 1891ին. վերջնոյս վրայ ազգային թերթերը քննադատութիւններ ալ ըրին [1]։

Արծրունիի գործունէութիւնը կապուած է ժամանակին պատմութեան հետ. իր հեղինակութիւնը ժողովրդեան մէջ ամենամեծ եղաւ. բաւական էր միայն անոր յորդորանքը, և ահա հազարներ կը թափէին յոգուտ տաճկահայաստանի սովեալներու, Րաֆֆիի ընտանեաց և մեռնող բանաստեղծ Պատկանեանի։ Զինքը պաշտող ժողովուրդը չվարանիր ձայնին հետեւելու կաթողիկոսական ընտրութեան մէջ և պատգամաւոր այնպիսի

1. Նոր դար, Թ. 129 (1891). — Մուրճ, Թ. 12 (1891). — Հայրենիք, Թ. 110 (1892). — Մեճմուա, Թ. 2292 (1892). — Արեւելեան մամուլ, Թ. 2 (1892)։

ազգու անձ մը ընտրել։ «Ցանձին Արծրունիի, կ՚ըսէ ռուս թերթ մը, կորուսին Հայերը իրենց առաջին և միակ հրապարակախօսը, որու նման չեն ունեցած իրենց դարաւոր գոյութեան ընթացքին մէջ։ Նա գիտէր բառերով բոցավառել մարդկանց սրտերը։ Քսան տարիներէ աւելի իբրեւ ինքնակամ իշխան իր ետեւէն կը տանէր ամբողջ երիտասարդ սերունդը, կը ղեկավարէր Հայերու բոլոր մտաւոր շարժումները և իր ետեւէն կը քաշէր թշնամիներն անգամ, որոնք չէին կրնար դիմանալ անոր մեծ, մաքուր և ազնիւ տաղանդի հրապոյրին։ Արծրունին միակն էր որ կը հասկընար կտրուկ, տաք և ուղղակի կերպով դնել հասարակական հարցերը և անոնց պատասխանել մոլեռանդութեան չափ համոզուած յափշտակութեամբ և առանց նկատումներու»։

Կ՚ուզենք կնքել մեր կենսագրականը Տիրվանզատէի գեղեցիկ խորհրդածութիւններէն մաս մը մէջ բերելով։... «Քո մէջ մարմնացած էր դարաւոր բողոքը մի ազգի, որ իր ճակատագրի դէմ շատ բան ունէր ասելու։ Եւ դու կոչուած էիր նրա նուիրական զգացմանց կենդանի թարգմանը լինելու։

Այդ էր քո զօրութեան բուն հիմքը։ Դու

խիստ էիր խաւարի դէմ կռուելում, և ուրիշ կերպ չէր կարող լինել։ Քո սիրտը և հոգին թելադրում էր քեզ, թէ միայն ուժգին հարւածներով կարելի է յաղթել թշնամուն։

Դու խօսում էիր թունաւոր լեզւով, որովհետև այդ թոյնը միայն կարող էր ոչնչացնել ամբոխի բարոյական աղտեղութիւնները։

Դառն էր քեզ համար այդ կռիւը, բայց և հաճելի։ Քո գրչի ծայրը ամէն անգամ թաթախում էիր քո սրտի արիւնում և այնպէս հրապարակ դուրս գալիս...։

Դու համաշխարհային աստղ, անզուգական հանճար չէիր, բայց լաւ ճանաչեցիր ժողովրդի դրութիւնը և արեցիր այն, ինչ որ պահանջում էր ժամանակը։ Ահա ինչու քո անունը պէտք է Հայոց անմահների դասը մտնէ և պատմութեան մէջ գրաւի նախանձելի տեղի...։

Քո կեանքի վերջին տարիները մի խրատական փաստ է քո յաջորդների համար։ Հայ ժողովուրդը քեզանով ջնջեց իր ճակատից ապերախտութեան այն կնիքը, որ շատերն էին դրոշմում այնտեղ։ Նա քո գործերը գնահատելով առատ ձեռքով ապացուցեց, որ որքան նա ժլատ է, այնքան էլ երբեմն առատաձեռն է դէպի իր մտաւոր

*աշխատաւորները։ Թող միայն այդ աշխատաւորները գործեն ազնւաբար, անշահախնդիր հոգով և անշեղ համոզմունքներով, ինչպէս դու գործեցիր...»։*



# ՔԵՐՈՎԲԷ ՊԱՏԿԱՆԵԱՆ

**1833–1889**

---

Հօրեղբօրորդի հռչակաւոր քերթողին՝ Ռափայէլ Պատկանեանի, ծնաւ ի Նախիջեւան մայիս 4ին 1833. մանկական օրերը փողոցի մէջ անցընելով, իր ընկերներէն սորվեցաւ ռուսերէնը, զոր իր մայրենի լեզուին պէս կը խօսէր: Նախնական ուսմունքն ըրաւ Ստաւրոպոլի գիմնազիոնին մէջ, և տարի մը ետքը 1843ին անցաւ ի Մոսկուա, Լազարեան ճեմարանը: Տասնամեայ Քերովբէն Մոսկուա ղրկուած ատեն, թէպէտ յանձնուած էր կարաւանին, սակայն հետը խիստ կը վարուէին. գիշեր մը երբ ամէնքը քունի մէջ էին, սայլէն վար իջնելով փախաւ. բայց խեղճ տղան չէր գիտեր թէ իր կարմրագոյն մուճակները հովուական մեծամեծ շանց բազմութիւն մը վրան պիտի հրաւի-

գաղղիական և գերմանական գրականութեանց, սորվելով նաեւ անգղիերէն և իտալերէն լեզուները։ Նոյն տարուոյն վերջը Թիֆլիզ գալով ուսուցիչ եղաւ ռուս գրականութեան՝ Անդրկովկասեան աղջկանց վարժարանին մէջ։ Հետեւեալ տարին ամուսնանալով Աքիմեան Աղաթոն հայ քահանայի դստեր հետ, ապահովցուց իւր նիւթականը և իր սիրելի ուսումնական զբաղմանց տուաւ բոլորովին ինքզինքը։ Ժողովրդական չռաշաձորուշբիւն կոչուած ուսումնական ընկերութեան անդամ գրուեցաւ, և սկսաւ հիմնովին ուսումնասիրել ընդհանուր պատմութիւնը և առանձին կերպով հայկական գրականութիւնը։ 1860ին հրատարակեց գաղղիերէն լեզուով «Ցուցակ հայերէն մատենագրութեան ի սկզբանէ չորրորդ դարու մինչ ի կէս եօթնեւտասներորդին[1]»։

Բայց որովհետեւ Քերովբէ որոշեալ պաշտօնական կացութիւն մը չունէր, որպէս զի իր տարտամ վիճակէն ազատի, ուզեց բժշկութիւն ալ սորվիլ, առանց գիտնալու թէ ծայրը ո՛ւր պիտի երթայ. սակայն շուտով

Զ․ Գիտութեանց ճեմարանին Ցիշատակագրոց մէջ, հտ. Բ. 49–91։

պիտի մտնար նոր շրջանի մը մէջ։ 1861ին Պետերբուրգի համալսարանին հայ լեզուի ուսուցիչն Բերոյիէվ պաշտօնէն հրաժարեցաւ. Քերովբէ իրեն յաջորդելով սկսաւ իր ուսուցչական գործունէութիւնը, որով մեծ անուն հանեց իբրեւ հայ գրականութեան ներկայացուցիչ՝ եւրոպացի արեւելագիտաց առջեւ. ռուսերէն և գաղղիերէն լեզուով գրած հմտական գրքերով, հին հայ մատենագրութեանց ընտիր հրատարակութիւններով և շատ հայ պատմագիրներ ռուսերէն թարգմանելով։

Սակայն ամենէն աւելի մեծ նշանակութիւն ունի եւրոպացի հայագիտաց առջեւ իր երկու լեզուագիտական երկասիրութիւններով։ «Քննութիւնք ի վերայ կազմութեան հայ լեզուի[1]» (1864) և Նիւթք վասն հայե-

1. Այս ռուսերէն բանամրցութեան համար տոքտորի աստիճան ընդունեցաւ։ Պատկանեան Հայերէնը իրանեան լեզուաց կարգին մէջ կը դնէ։ Ներածութեան մէջ, գաւառաբարբառներու կարեւորութեան վրայ կը խօսի. գրաբարը Արարատեան գաւառին սովորական արքունի լեզուին վրայ հիմնուած կը համարի, դասակարգութիւն մը կ'ընէ մեզ ծանօթ գաւառաբարբառներուն։ Յետոյ կ'անցնի մեսրոպեան այբ-

դավլոյին դիւանատան արտաքոյ կարգի պաշտօնեայ ընտրուեցաւ՝ ուր մնաց 1868–1874. իսկ 1872ին գրաքննիչ յանձնաժողովէն՝ Հայերէն հրատարակութիւնները քըննելու պաշտօնն ընդունեցաւ։ Նոյն տարին Թօշակաւոր ուսուցիչ եղաւ Պետրբուրգի Համալսարանին մէջ, 1867–1882. Հնախօսական ընկերութեան Արեւելեան մասին քարտուղար, իսկ 1882–1885 ատենաւ՝ նոյն մասին։ 1882ին ընտրուեցաւ մի ի խմբագիրներէն M...... գրական–քննադատական օրագրին՝ որ Լուվէնի մէջ կը հրատարակուի։ 1885ին Թղթակից անդամ եղաւ Գիտութեանց ճեմարանին։

Ճանապարհորդութիւններ ալ ըրած է այցելելով Վենետիկոյ, Միւնխենի, Փարիզու և Վիեննայի գրատուններն և ծանօթանալով եւրոպացի երեւելի հայագիտաց, որոնց հետ անընդհատ թղթակցութեան մէջ էր։ Մասնակցեցաւ արեւելագիտաց մի քանի միջազգային ժողովներուն, որոնցմէ առաջնոյն մէջ որ ի Փարիզ գումարուեցաւ 1873ին, ճառախօսութիւն մ'ըրաւ Գաղղիոյ և Գերմանիոյ մէջ հայ լեզուի ուսման և Վանայ բեւեռագիր վերտառութեանց վրայ։

Կենացը վերջին երեք տարիները ծանր

*հիւանդութիւն մը Պատկանեանի ուժերը սպառեց, և 56 տարուան մեռաւ ի Պետերբուրգ 1889 ապրիլ 2ին, թողլով մարմինը հայկական գերեզմանատան մէջ, իսկ պատկառելի երկասիրութիւնքը անմահ յուշարձան ազգին և օտարաց առջեւ։*

*Կը ցաւինք ըսելու որ այս մեծ հանճարը՝ ազգիս մեծ մասին անծանօթ մնացած է, և ասոր միակ պատճառն է իր տաղանդաւոր գրութեանց ռուսերէն ըլլալն. զոր ձեռնհաս ռուսահայերն չթարգմանելով, մեղադրելի կը մնան, գիտական պատակարգի առջեւ։ Զանց կ'ընենք մի առ մի յիշատակել Պատկանեանի բանասիրական և հնախօսական գրուածները, ինչպէս նաև ըրած թարգմանութիւնները և հրատարակութիւնները. ցանկացողք կրնան գտնել մանրամասն նշանակուած «Հայ լեզուի ուսումն յարևմուտս[1]» գրքին մէջ։*

1. Վենետիկ 1893, էջ 372–384։ — Իսկ կենսագրական տեղեկութիւններ առինք Վեսսելովսկիի գրուածէն, թարգմանուած ի Բազմավէպի 1891, 139, 176։ — Հմմտ. Հանդէս Ամսօրեայ 1889, էջ 89։



# ՂԱԶԱՐՈՍ ԱՂԱՅԵԱՆՑ

*Թէ ո՛վ է Աղայեանց, շատերուն ծանօթ է կամ իրեն գրուածներով և կամ ինքնագիր կենսագրութեամբ, որ ինը տարի առաջ Մուրճի մէջ և յետոյ առանձին գրքով լոյս տեսաւ։ Մեծանուն գրագէտին կենաց և գրքերուն վրայ աչք մը տալ՝ պիտի արթնցնէ մեր մէջ իր համակրելի յիշատակը, երբ երախտաճանաչ յոբելեանով մը կը պատրաստուին չթողուլ անպսակ՝ ալէզարդ ծերունւոյն վաստակաւոր գլուխը։*

*Ծնած է Խաչէն գիւղը, (որ Թիֆլիզէն դէպ ի հարաւ վաթսուն վերստ հեռու կը գտնուի),* 1840*ին, երբ Մասիսը շարժելով Ակոռին ծածկեց։ «Մայրս ասում էր — կը գրէ նա — թէ քեզ մկրտել ենք Մեծ պասումը Ղազարոսի յարութեան օրերին, քո ծնուելուց*

*ութ օր յետոյ։ Այս բանին ես կարեւորութիւն չը տալով՝ չեմ հետաքրքրուել ստուգելու, թէ այդ տարին Քրիստոսի բարեկամը ո՛ր ամսի քանիսի՛ն է յարութիւն առել»։ Տասներեք տարեկան էր, սիրոյ առաջին ծիլը*



Ղ. ԱՂԱՅԵԱՆՑ

*սկսեր էր ընձիւղիլ, սակայն հայրենի գաւազանին վախը, զինքը Թիֆլիզ փախուց և և մտաւ Ներսիսեան դպրոցը։ Երկրորդ անգամ տնէն դուրս հանուելուն պատճառ նախապաշարմանց դէմ կռուիլն էր։ Անկէ վերջ*

եօթը տարի թափառեցաւ սար ու ձորի մէջ, որսորդներու և այլ անտառաբնակներու հետ, քաղքին մէջ ալ շատ անգամ շատերուն քով մտնելով և ելլելով և անցնելով՝ չարքաշ կեանք մը, որով ստացաւ առողջ ուժեղ կազմուածքի հետ՝ վայելուչ հասակ։ Բայց ուսման սէրը անտառի ազատ արծիւը կամովին վանդակի մէջ ձգեց և ճկել տուաւ վիզը հուլողի և գրաշարի ծանր լուծի տակ։ Օր մը դիպուածով գրած երգիծաբանական ոտանաւորները կ'անցնի իր տիրոջ Հ. Էնֆիաճեանցի ձեռքը. նոյն օրէն Աղայեան՝ անոր ուշադրութիւնը կը գրաւէ, կ'արժանանայ առատ վարձատրութեան. բաց աստի, իր տէրը, ժամանակ ալ կը շնորհէ որ ընթերցմանց պարապի, նոյնպէս իր տիրոջ շնորհիւ կը ծանօթանայ Հախվերդեանին հետ, և Կռունկի խմբագրութեան։ Աղայեանց Մեղուին մէջ հրատարակեց իր առաջին ոտանաւորը (1862, մայիս) որուն համար Աղաբէկեան գովելով, ըսաւ իրեն «Աշխատէ, չյուսահատիս, դու ապագայ ունիս. միայն այստեղ չմնաս. գնա Ռուսաստան»։ Այս յորդորն էր որ զինքը մղեց թողլու Թիֆլիզը, իրեն հետ տանելով նաև անբաժան ընկերը Միքայէլը։ Ճամբայ ընկաւ դէպ ի

Մոսկուա, սակայն գրածը պակասեցաւ. Հարկ եղաւ մնալ ի Թէոդոսիա, Խալիպեան տպարանի մէջ աշխատելով ճամբու ծախս պատրաստելու. Հոն նոյն ատեն Հ. Գաբր. Այվազովսքի էր տեսուչը։ Քանի մ'ամիս վերջ յաջողեցաւ ինքզինքը ձգել ի Մոսկուա, ուր Նազարեանցի, Էմինի դասերը գտնելէ վերջ, Մսերեանցի քով գրագրութիւն ըրաւ։ Քիչ վերջ Պետրբուրգ անցնելով, ընդունուեցաւ Գիտութեանց ճեմարանի ապարանքին մէջ իբրեւ գրագիր արեւելեան լեզուներու։ 1863ի Զատկի տօները Ռափայէլ Պատկանեանի Մեծին Պետրոսի պատմութիւնը շարել սկսաւ, որ պիտի նուիրուէր բարձրաստիճան անձի մը, որպէս զի անով Տէր Գաբրիէլ Պատկանեանը մայրաքաղաք բերելու հրամանը ստանան։ Պատկանեանի քով տարի մը մնաց, շարեց նաեւ անոր խմբագրած Հիւսիսը, յետոյ դառնալով ի Մոսկուա Նազարեանցի ալ Հիւսիսափայլի գրաշարը եղաւ։ Մոսկուայի մէջ մնաց 1863էն 1864ի վերջերը եւ այդ փոքր ժամանակը կարեւոր է համարել իր մտաւոր զարգացման սկիզբը. Համալսարանի խումբ մը ռուս ուսանողներ ձրի դասաւանդութիւն կ'ընէին գործարաններու մէջ գտնուող աշակերտներու եւ վար-

նպաստաւոր եղաւ նոյն ժամանակուան մտաւոր կեանքի շարժումը, նա համալսարանը շատ չյաճախեց բայց կը սիրէր հասարակաց գրադարանը, որուն մշտական ընթերցողը դարձած էր։ 1876ին Պետրբուրգ կու գար նորընտիր Գէորգ կաթողիկոսը. Աղայեանցի նոր ասպարէզ պիտի բացուէր, որ արդէն հայրենեաց կարօտը կը զգար, վեհափառը միտք ունէր Էջմիածնի տպարանը նորոգելու և Աղայեանց միակ յարմար անձն էր։ Տարի մը վերջ իր հանճարեղ գործունէութեամբ նոր փայլ առաւ Էջմիածնի տպարանը. Արարատ ամսագիրն ալ նոր խմբագրի ազդեցութեան տակ և անոր յօդուածներով Աշխատութեան և Դաստիարակութեան վրայ, կերպարանափոխեցաւ. բայց հարկ եղաւ թողուլ Էջմիածինն ալ։ 1870 թուականն էր. Աղայեանց կը մտնար իր ուսուցչական գործունէութեան ասպարէզը, և նախ սկսաւ Ախլցխայէն, ուր աշխատեցաւ դպրոցը հնադարեան կրթութեան ճիրաններէն ազատելու. յետոյ թողուց և անցաւ Աղեքսանդրապոլ. Ստ. Մալխասեան մը պատիւ և հետեւող եղաւ իր ուսուցչին՝ Ախլցխայի վարժարանէն։ Աղեքսանդրապոլի մէջ օրիորդաց կրթութիւնը յանձնուեցաւ Աղայեանցի, ամ-

բողջ հինգ տարի կեցաւ և բեղմնաւոր եղաւ ուսուցչական և գրական տեսակէտով։ Հոս թարգմանեց դասախօսութեանց առթիւ իր երկու գրքերը Բացատրութիւն բնութեան երեւոյթների և Տարրական ֆիզիկա և գրեց բազմաթիւ յօդուածներ թէ մանկավարժական և թէ քննադատական, ինչպէս դարձաւ Երկու քոյր եղերերգական վիպասանութիւնը (1880)։ Սակայն ընտանեկան ձախորդութիւնք մրդովեցին իր հանգիստը և Թիֆլիզ դարձաւ սթափուելու. տարի ու կէս փորձի խմբագրատունը անցընելէն վերջ, 1878ին Երեւան գնաց ուսուցչութեան. ութ ամիս կեցաւ հոն և ահա անակնկալ հրաւէր մը դարձուց զինքը դէպ ի Շուշի, ուր Հայր Սեդրակեանի հետ պիտի վերականգնէին դըպրոցը։ Յոգնած և սպառած դարձաւ ի Թիֆլիզ, որոշելով ալ եւս հեռանալու բոլորովին ուսուցչական ասպարիզէն, և հանգստանալու համար, դիմացը իբրեւ դրախտ մը բացուեցաւ Մանկական պարտէզը, ուր գրագիտութիւն կը սորվեցնէր օրը երկու ժամ, իսկ ազատ ժամերը կը նուիրէր մանկական գրականութեան և բանաստեղծութեան։ Մանկական պարտեզէն հեռացած չէր, երբ Սեդրակեան որբանոցը Թիֆլիզ եկաւ իբ-

թերթն է տղայոց միտքը անուցանելու զբաղող. և իր հեքիաթները, վէպերը ու առասպելները, իրենց փափուկ լեզուով, վիպասանական կախարդիչ և գրաւիչ ոճով առհասարակ ընդունելութիւն գտած են։

Բաց ի վիպական գրքերէ, յօրինած է նաև դասագրքեր, մանաւանդ հայկական լեզուի. Ուսումն մայրենի լեզուի (1889) երեք գրքերու բաժնուած, Հայկական հնչիւնեների մասին (1874), և քննադատական յօդուած մը Իսահակ Յարութիւնեանցի «Հայոց գիրը» գրքին վրայ (Մուրճ. 1892 էջ 1841)։ Աղայեանց մտուցած է ռուսահայոց մէջ ւ գրի գործածութիւնը փոխանակ ուի, (լեզուի = լեզւի) որ շատ վիճաբանութիւններէ վերջ, ընդհանուր գործածական դարձած է։ Վերոյիշեալ գրքերէն զատ Աղայեանց ունի ուրիշ գրուածներ ալ, Բանաստեղծութիւններ (1890), ժողովածու մը ոտանաւորներու. Անահիտ (1881), ազգային հին զրոյցներէն առած վէպ մը որ օտար լեզուով ալ թարգմանուած է. Արփեգ հովուական (1882), երգեր, ոտանաւորներ և առակներ մանուկներու համար. Ոսկի Ճկնիկ (1884), Պուշկինէն ազատ թարգմանութիւն. Նախագիտելիք՝ գիտակցաբար կարդացնելու մասին

(1886), ծնողաց և վարժապետաց համար. Մի երես մեր նորագոյն պատմութիւնից (1891), արտատպուած «Հանդէս գրակ. և պատմ.» թերթէն. Մեր ուսուցիչներին ընկերական նուէր (1892). Ժամանակակից ատենախօսութիւն (1898), Մուրճ ամսագրէն արտատպուած։

Աղայեանց հետեւող եղած է Աբովեանի. ոճին գեղեցկութիւնը և լեզուին փափկութիւնը ռուսահայ գրագէտներու մէջ զինքը առաջնակարգ ըրած են. իր գրքերուն մէջ գլուխ գործոց համարելու է Տորք—Անգեղ և Հայկանոյշ — գեղեցիկ առասպելախառն բանաստեղծութիւնը, որ տպուած է Աղբիւրի մէջ, և յետոյ առանձին գիրք եղած։

# ԱՂԵՔՍԱՆԴՐ ԵՐԻՑԵԱՆ

**1841–1902**



Ըսուած է թէ Երիցեանը Կովկասահայոց Ալիշանն է. անշուշտ համեմատութիւն մ'ընել չէ, այլ սոսկ ցուցընել բացատրել թէ մեծ պատմագէտ և հնախօս Երիցեանը, — մասամբ մը — գիտնական հօր հմտութիւնը ունէր այս մասնաճիւղին մէջ։ Եւ յիրաւի Ներսիսեան դպրոցի պատմութիւնը և կամ Ամենայն Հայոց կաթողիկոսութիւնը կարդացած ատենները, երբ անցեալ դարերը մեր առջեւ մանրամասն



Ա. ԵՐԻՑԵԱՆ

պատկերացած կը ներկայանան, երբ աշխարհի խուլ և մութ անկիւնի մէջ կատարուած ու խօսուածը կարծես մոգական գուշակութեամբ մեր դիմաց կը կրկնուէին, զարմացած կ'ըսենք թէ երկարատեւ ու համբերատար քննութեամբ ու գիտութեամբ գրուած են անոնք։

Ողբացեալն Երիցեան որ փետրուարի 21ին կնքեց կեանքը[1], ծնած է ի Թիֆլիզ Խարփուխ թաղի մէջ 1841 հոկտ. 4ին. ութ տարեկան կը մտնէ Ներսիսեան դպրոցը և քանի մ'ամիս վերջ Երէցփոխեանի վարժարանը, հոսկէց ալ գիմնազիոն և ուսումն կիսատ թողլով կ'ելլէ ցնցղատապ (bronchite) հիւանդութեան պատճառաւ։ Տասնըհինգ տարեկան հասակին բաւական զարգացած և ազգային պատմութեան տեղեակ էր, այնպէս որ ուսումնակիցներուն գլուխ անցած շաբաթական ժողովներ կը գումարէր, որ «սիրագումար ժողով» անուամբ մկրտուեցաւ, և որուն մէջ կը կարդային, կը թարգմանէին, կը վիճաբանէին։ Իրենց թարգմա-

1. Կենսագրական տեղեկութիւններն առեր ենք հետեւեալ թերթերէն. Տարազ, 1902 թ. 8։ Մշակ, 1902 թ. 43, 44։ Մուրճ, 1902 թ. 3։

նութիւնները նոյն իսկ կը տպագրուէին Մեղու Հայաստանի լրագրին և Կռունկ ամսաթերթին մէջ. և 1860ին հրատարակեցին գրքոյկ մ'ալ «Բարոյական պատմութիւնք երեխայոց համար» վերնագրով. Երիցեան ևս այդ ժողովածուի մէջ դրած է «Բարի խորհուրդներ» վերտառութեամբ վէպիկ մը։ Փոքրիկ խումբը երեւալով իր գործունէութիւնը ծաւալեց. նախ աշակերտական գրատուն մը հիմնեց, ձեռագիր սկսաւ հրատարակել, և մանկական գրքոյկներ տպագրել, յետոյ մինչեւ խեղճ դպրոցներու մէջ ձրի դասախօսութիւններ ընել և կիրակի օրերը հասակաւոր անձանց ալ դաս տալ. քիչ վերջ հասարակութեան առջեւ հայերէն ներկայացումներ ըրին. Երիցեան այս մասին ալ օգնութեան հասաւ 1866ին Արուսեակ անունով ողբերգութիւն մը գրելով։ Սիրագուշմար ժողովին երկու եռանդուն գործիչները Աղեքսանդր Երիցեան և իր անբաժան ընկեր Գէորգ Տէր–Աղեքսանդրեան 1866ին սկսան Թիֆլիզի մէջ Վաճառական անունով շաբաթաթերթ մը հրատարակել, որ երկու տարի ապրեցաւ և Ընթերցարան անուամբ դասագիրք մը կազմեցին որ ժամանակ մը Կովկասի դպրոցներու մէջ շատ տարածուած

էր և երրորդ տպագրութեան ալ արժանացաւ։ Երիցեան երկար ատեն պետական ծառայութեանց պարապած է. մտած է Կովկասի Հնագիտական Յանձնաժողովին մէջ և իրեն սիրելի հնութիւնները ուսումնասիրելով այլ և այլ յօդուածներ գրած է ռուսերէն լեզուով. հնագիտական հետազօտութեանց համար զանազան ճամբորդութիւններ ըրած է, ինչպէս 1871ին Լօռի հնութիւնները ուսումնասիրելու համար։ 1872ին նոյն իսկ սկսած է ռուսերէն լեզուով ամսագիր հրատարակել Թիֆլիզու մէջ Կովկասեան հնութեան անուամբ, ուր կը զետեղէր իր ըրած բազմաթիւ մանրակրկիտ քննութիւնները. Թերթէս ութը թիւ միայն հրատարակուած է։ Բաց ի ռուսերէն յօդուածներէն՝ որ տեղական լրագիրներուն մէջ լոյս տեսած են, աշխատակցած է նաեւ Փորձ ամսագրին՝ ուսկից արտատպած է 1878ին Ներսէս հինգերորդ Աշտարակցի կաթողիկոսի կենսագրութիւնը, և Արձագանք լրագրին՝ ուր տպուեցաւ և առանձին ալ գիրք կազմուեցաւ 1883ին՝ Վենետիկի Մխիթարեանք։

1886ին Երիցեան հրաժարելով ամէն պաշտօններէ և ապահովելով իր նիւթական ապրուստը, նուիրած է ինքզինքը բոլորովին

գրական աշխատութեանց։ Առաջ որ յօդուածներով միայն իր ուսումնական գործունէութիւնը ցոյց տուած էր, երկրորդ շրջանին մէջ արդէն իսկ հմտութեան մեծ պաշար մը ամբարած, կը տպագրէ առանձին մենագրութիւններ և ընդարձակ գործեր։ 1890ին Արծրունիի յոբելեանին առթիւ կը գրէ «Գրիգոր Արծրունի և նրա քսանհինգամեակը», որ մանրամասն տեղեկութիւններ կը բովանդակէ Արծրունիի ազգատոհմին վրայ. գործիս երկրորդ մասը՝ որ բուն իսկ Մշակի մեծանուն խմբագրին գործունէութիւնը պիտի բովանդակէր, լոյս տեսած չէ։ Երիցեանի ամենէն պատկառելի գործն է Ամենայն Հայոց կաթողիկոսութիւնը և Կովկասի հայք ԺԹ դարում, երկու ստուար հատորներէ ձեւացած և դեռ քանի մը հատորներու մէջ հազիւ ամփոփուելիք աշխատութիւնը. վասն զի մինչդեռ հեղինակը կը յայտնէր առաջին հատորին (տպ. 1894) յառաջաբանին մէջ[1], թէ բոլոր գործը պիտի բաղկանար երկու հատորներէ, առաջինը պիտի հասնէր 1800էն մինչեւ 1832 և երկրորդը անկէ մինչեւ 1893.

1. Քննդ. Մշակ, 1894, թ. 44։ Մուրճ, 1894, էջ 587։

նիւթերու շատութենէն ստիպուած երկրորդ մասը (տպ. 1895) նուիրեց 1831–1842 ժամանակամիջոցին, խոստանալով լրացնել գործը երեք, չորս կամ հինգ հատորներով։ Այսպէս նաեւ եղաւ Երիցեանի միւս աշխատութիւնը Պատմութիւն 75–ամեայ գոյութեան Ներսիսեան Հայոց հոգեւոր դպրոցի. (տպ. 1898). Նպատակն էր հատորի մը մէջ ամփոփել Ներսիսեան դպրոցի ամբողջ պատմութիւնը, բայց մէկ կողմանէ հետզհետէ ծանօթանալով նորանոր աղբիւրներու, միւս կողմանէ ալ երկրորդական մանրամասնութեանց շատ տեղ տալով, ստիպուեցաւ ընդարձակել աշխատութիւնը, և երկրորդէն զատ երրորդ և գուցէ չորրորդ մ'ալ հրատարակել հարկ ըլլար. առաջին մասը 1824–1850 ժամանակը կ'ընդգրկէ[1], երկրորդը՝ ուսկից 144 էջ տպագրուած է և նոյնչափի մ'ալ նիւթ պատրաստ կայ, մինչեւ 1857 թուականը հասուցած է։

Մտադիր էր Երիցեան հրատարակել ուրիշ աշխատութիւն մ'ալ ռուսերէն լեզուով, այն է՝ Հայոց եկեղեցւոյ նախկին յարաբերութիւնը Ռուսաստանի հետ, ամենահին ժամանակ-

1. Քննդ. Մուրճ, 1898, էջ 1758։

ներէն սկսեալ. ուստից հաստատած մ'ալ կար-
գաց Հնագիտական ընկերութեան նիստերէն
մէկուն մէջ, սակայն նոյնպէս թերի մնացած
է։ Ուրիշ լայնածաւալ գործ մ'ալ զոր հմտա-
լից ծանօթութիւններով ճոխացուցած էր,
երեսուն տարի աշխատելով, և որուն հրա-
տարակութիւն փափաք և պարծանք կը զգար՝
էր նշանաւոր Յովսէփ կաթողիկոս Երկայնա-
բազուկ Արղութեանի գրագրութիւնը իր ժա-
մանակի երեւելի գործիչներու հետ. գործս
Կովկասի և Ռուսաստանի պատմութեան վրայ
մեծ լոյս պիտի սփռէր։

Երիցեանի անկորուստ աղբիւրներէն մին
ալ այն է որ նա իր ամբարած հմտութիւնը
միասին չտարաւ, թողուց երկար տարինե-
րու ընթացքին մէջ ժողոված ամբաւ վկայա-
գրեր, կոնդակներ և պաշտօնական թուղթեր,
որ պատմութեան նեցուկ և օգնութիւն կրնան
ըլլալ։

Երիցեանի գրոց մէջ պատմական մեծ
հմտութեան հետ զոյգ կ'ընթանայ Կովկասի
տեղագրական ծանօթութիւնը. նա ինչպէս
անցեալին նշանաւոր դէմքերը ու դէպքերը
այնպէս ալ Կովկասի ամէն հնութիւնները,
շէնքերն ու աւերակները կը ճանչնար. աչ-
քէն վրիպած չէր եկեղեցական և քաղաքա-

կան հրովարտակ կամ կոնդակ, և պատգամ մ'էր հնագիտական և ազգագրական իրաց մէջ։ Սակայն իր գրութիւնները պատմութենէ աւելի ժողովածու ըլլալու երեւոյթն ունին, վասն զի պատմագրութեան համար այնքան անհրաժեշտ լայն հայեացքները, քննադատական կարողութիւնը չի տեսնուիր անոնց մէջ։ Երիցեանը, կը յաւելու Մուրատ, կրցած է մեղուի պէս նիւթեր ժողվել բազմաթիւ աղբիւրներէ, զանոնք դասաւորել, նա շատ դէպքերու մէջ դիւրացուցած է ապագայ պատմաբանի գործը։ Մանրամասնութիւնները մշակելու, փաստերով լուսաբանելու մէջ շատ ճարտար է, բայց պատրաստութիւն չունի մեծ շէնք մը կառուցանելու, ներդաշնակ ամբողջութիւն մը ստեղծելու համար։

Սակայն ինչ ալ ըլլայ, Երիցեանի գրածները և ձեռագիրները հնախօսական շտեմարան մը պիտի ըլլան, ուսկից պէտք է օգտուին ապագայք. և նա մեր աղքատ գրականութեան մատուցած ծառայութեան համար անմոռաց պիտի մնայ միշտ։

Թէ ի՞նչ էր Երիցեան իբրեւ գաղափարի և կուսակցութեան մարդ. այդ իր գրչով ծանօթ է արդէն...

# ՏԷՐ ԳԱԲՐԻԷԼ ՊԱՏԿԱՆԵԱՆ

## 1802–1889

---

Ռուսահայ գրագիտաց մէջ մեծ անուն և արդիւնք ունի Պատկանեան գերդաստանը. բանասիրութեամբ և բանաստեղծութեամբ զարդարեցին անոնք Հայ մատենագրութիւնը. եթէ Ռափայէլ Պատկանեան քերթողի մը թռիչներով սրտացաւ բարձրացաւ, եթէ Քերովբէ Պատկանեան քննադատական և մատենագրական համբաւով լեցուց արեւմուտքը, Տէր Գաբրիէլ ալ իբրև պատմիչ – բանաստեղծ, իբրև ուսուցիչ, և իբրև հիմնադիր ռուսահայ աշխարհաբար մամուլին, իրաւամբ արժանի է մեր մէջ անմահանալու[1]։

Ծնաւ՝ Թիֆլիզի մէջ, որդի՝ Պոլսեցի նշա-

1. Տես Ազգաբանութիւն Պատկանեան տոհմին, Արեւելք, 1889, Թ. 1598, 99։ — Կենսագրական տեղեկութիւնները առեր ենք, Աղ. Երիցեանի՝ Ներսիսեան դպրոցի պատմութենէն, էջ 474-7։ — Մշակի՝ 41, 42, 55 թիւերէն։

նաւոր Սերովբէ վարժապետի, որ Վենետիկի Մխիթարեանց քով սորված էր, և Հայր բազմահռչակ քերթողին Ռափայէլ Պատկանեանի։ Հինգ տարուան էր, երբ հայրը Աստրախան եկաւ, Հայոց հրաւէրքով, փոքրիկ դպրոց մը բանալու. Գաբրիէլ ալ աշակերտներէն մէկն էր։ Հայերէնի մէջ բաւական հմտանալով, տասը տարուան, ոչ միայն հօրը օգնական կ'ըլլար այլ ոտանաւոր ալ կը գրէր. քիչ ատենէն Ռուսաց դպրոցի մէջ ռուսերէնն ալ սորվելով և անձնական ջանքովը և ընթերցմամբ այնչափ յառաջացաւ որ օտարազգի և հին դասական հեղինակներու գրուածները կը կարդար. հմուտ էր ի մասնաւորի դիցաբանութեան։ Տասն ու հինգ տարեկան հասակին մէջ արդէն այնքան զարգացած և կրթուած էր, որ Յովհաննէս արքեպիսկոպոսը զանիկայ քովը առաւ և իրեն յանձնեց Աստրախանի հայոց ժողովոյն քարտուղարութիւնը, միանգամայն ուսուցիչ դրաւ այն տեղի հոգեւոր դպրատան, և ամենեւին չէր քաշուելով իր բարձր աստիճանէն, դաս կ'առնէր Գաբրիէլէն, յորդորելով ուրիշ եպիսկոպոսներն ու վարդապետներն ալ որ անկից սորվին։ 1820ին դեռ տասնութ տարուան՝ տպեց Վարդապետութիւն ուղղափառութեան

*գիրքը. իսկ 1827ին հրատարակեց Պատ-մութիւն մեծին Աղեքսանդրի Մակեդոնացւոյ, թարգմանեալ ի պատմագրութեանց Դիոդորոսի Սիկիլիացւոյ ի Գաբրիէլ սարկաւագէ Պատկանեանց: Նոյն տարին Գաբրիէլի հայրը նոր հրաւէր ստացաւ Նոր–Նախիջեւանէն, գալու և դպրոց բանալու, պայմանով որ որդին ալ հետը բերէ. այսպէսով տեղափոխուեցան Նոր–Նախիջեւան: 1832ին Գաբրիէլ սարկաւագը քահանայ ձեռնադրուեցաւ Գրիգորիոպոլիս քաղքին մէջ, Բեսարաբիայի առաջնորդ՝ Ներսէս Աշտարակեցի արքեպիսկոպոսէն, այսու մօտիկ յարաբերութեան մէջ մտաւ ապագայ կաթողիկոս Ներսէսի հետ, որ Տէր Գաբրիէլը յորդելով հանդերձ անոր խելքին և կրթութեան համար, չէր հանդուրժեր հայեացքներուն անկախութեան և հակաճառութիւններուն, այս պատճառով իրենց մէջ յաճախ ընդհարումներ կ'ըլլային: Ներսէսի հրամանով էր որ 1833ին գնաց Նոր–Նախիջեւանու սուրբ Լուսաւորիչ եկեղեցին, բանալու հոն մասնաւոր դպրոց և գիշերօթիկ վարժարան՝ գիմնազիայի պատրաստուողներու համար: Այս դպրոցի մէջ կը սորվէին Միքայէլ Նալբանդեանց և Գամառ–Քաթիպա: Մանկավարժութեամբ ուրեմն և*

իր քահանայական պաշտօնը կատարելով անցուց մինչեւ 1845, նոյն տարւոյ վերջերը տեղափոխեցաւ Թիֆլիզի Նորաշէն եկեղեցին։ Ներսէս արքեպիսկոպոսը, քիչ առաջ կաթողիկոս ընտրուած, Պետրբուրգէն՝ (ուր Նիկողայոս Ա. կայսեր ներկայանալու գնացեր էր), կու գար ի Թիֆլիզ Ներսիսեան վարժարանը կենդանացնելու, որուն կանոնագրութիւնը, Հայերէնի ուսուցչութիւնը և երկուք ու կէս ամիս ալ տեսչութիւնը (1850), առանց նոյն Ներսէսի գրաւոր հաստատութեան, Տէր Գաբրիէլի յանձնուեցաւ։— 1847ին, Տէր Գաբրիէլ կ'աշխատակցէր Կովկաս նորաբողբոջ հայ լրագրին, սակայն բանակռիւ մ'ունենալով, 100 ռուբլի տուգանքի ենթարկուեցաւ, իսկ Կովկաս թերթն ալ դադրիլ ստիպուեցաւ[1] (1846–1848)։ Անկէ

1. Հայ լրագրութեան պատմութեան մէջ ուրիշ պատճառներ ալ կը յիշուին «Ծախուց՝ մուտքէն առաւելութիւնը, և աւելի՝ ժամանակին եւրոպական յեղափոխութեանց ծագմամբն՝ գրաքննութեան խստութիւնը փակեցին ասպարէզը Կովկասու առջեւ» (էջ 92)։ — Իսկ ինքը Տէր Գ. Պատկանեան, Կովկասու խափանուելուն պատճառ՝ գործածած լեզուին գրաբար ըլլալը կը համարի։ (Պատմ. Հայ Դպրութեան, Բ. էջ 476)։

վերջ աշխատեցաւ առանձին տպարան և պարբերական թերթ հիմնել, և 1850ին (սեպտ. 1) յաջողեցաւ հրատարակել Արարատ անուն առաջին աշխարհաբար շաբաթաթերթը ռուսահայոց մէջ: Թերթիս կ'աշխատակցէին իր աշակերտը Միք. Նալբանդեան, որդին Ռափայէլ և եղբայրը Միքայէլ Պատկանեան: Կը բովանդակէր բացի քաղաքական լուրերէ, ազգային պատմութեան և գրականութեան վերաբերեալ յօդուածներ, մանր վէպեր, ոտանաւոր բանաստեղծութիւններ: Որչափ որ ժողովրդեան մատչելի՝ և ամենուն համակրութիւնն ալ սկսած էր գրաւել, սակայն Արարատ տարուան մը կեանք ունեցաւ. դադրելուն պատճառն էր, Լազարեաններու միակ ժառանգին՝ եօթը տարեկան Յովհաննէսի մահուան համար, լրագիրը սեւ շրջանակով հրատարակելը: Թերթը՝ խափանուած, Ներսիսեան վարժարանի տեսչութենէն ալ որդւոյն և եղբօրը մէջ հանդիպած կռուի մը համար զրկուած, Տէր Գաբրիէլ Թիֆլիզի մէջ ա՛լ երկար չկեցաւ, Նոր-Նախիջեւան վերադառնալով սուրբ Լուսաւորչայ եկեղեցւոյն մէջ դարձեալ ծառայել սկսաւ և դպրոցի կառավարութիւնը ձեռք առաւ, Խալիպեանի հաճութեամբ, որ Նախիջեւանու մէջ այն

ատեն, քաղաքապետ, հարուստ, զօրեղ կամքի տէր մարդ էր։ Սակայն երկուքին մէջ թշնամութիւնը շուտով ծագեցաւ, երկուքն ալ խրոխտ, չընկճուող բնաւորութեան տէր ըլլալով, և հարկ չկայ ըսել թէ Տէր Գաբրիէլ տուժեց, եօթը տարի բանտարգելութեան դատապարտուելով, և ազատելէն վերջ կասկածի տակ թողուելու վճիռը ստանալով, որ պատարագ մատուցանելը կ'արգիլէր։ Գաբրիէլ Ալվազովսկի ալ իբր Բեսարաբիայի թեմի առաջնորդ և Խալիպեանի սերտ մտերիմ, հանդիսաւոր կերպով կարգալոյծ ըրաւ։ Թշուառ քահանայն աշխարհական տարազ հագած Նոր-Նախիջեւան դարձաւ և փորձեց վշտերը մեղմացնել Ստ. Պալասանեանի և ուրիշներու հետ դպրոց մը բանալով. բայց Խալիպեան դպրոցը նախանձով կը նայէր այս գործոն անձին վրայ, բողոք մը անոր աքսորանքը որոշել տուաւ, որ հազիւ որդւոյն և բարեկամներու միջամտութեամբ կարճուելով, Թոյլտուութիւն ստացաւ Պետերբուրգի մէջ ապրելու (1866)։ Հոն մնաց մինչեւ մահուան օրը իր արտասուած պատիւը կանգնելու և կորսուած կարգը վերստանալու, որ իր սրտին ամենէն մեծ վէրքն էր։ Ի սկզբան փոքրիկ խանութ մը բացած կը պարապէր

մանրունք վաճառելով, ազատ ժամերուն ո-
տանաւորներ կը գրէր, թարգմանութիւններ
կ'ընէր և գլխաւորապէս իր անձին կենսա-
գրութիւնը կը կազմէր։ 1870ին ատենները
կրօնաւորաց դրուեցաւ զինուորական դպրոց-
ներու մէջ։ 1878ին Գալֆայեան Խորէն
Նար–Պէյի զօրաւոր միջնորդութեամբ փո-
խուեցաւ իրեն դէմ եղած վճիռը և մի ան-
գամ դէթ պատարագեց և քարոզ խօսեցաւ
Պետրբուրգի Հայոց եկեղեցւոյն մէջ, Գէորգ
կաթողիկոսի հրամանով որ 1880ին մա-
գիստրոսութեան պատուանունն ալ շնորհեց
կոնդակով մը[1]։ 1885ին բոլորովին զրկուե-
ցաւ տեսութենէն, աչքերուն վարագոյր իջ-
նելով, սակայն ընթերցող մը միշտ քովը
զինքը կը զբաղեցնէր։ Ութսունը վեց տա-
րուան՝ վիրահատութիւն կատարուեցաւ մէկ
աչքին և վերստին տեսաւ աշխարհ և իր
մտերիմները, տալու համար անոնց իր հրա-
ժեշտի ողջոյնը, տարի մը ետքը փակելով
աչքերը ընդ միշտ 1889ի ապրիլի 13ին։
Մեծ է Տէր Գաբրիէլ Պատկանեանի գրա-
կան համբաւը, և ամբաւ են ինքնուրոյն և
թարգմանական, արձակ և ոտանաւոր գրուած-

1. Մասիս, 1880, Թ. 2673։

ները, իր երկասիրութեանց մաս մը եթէ հրատարակուած է, սակայն մեծագոյն մաս մը դեռ ձեռագիր է, յորս բաց ի Շէքսբիրի գրուածոց թարգմանութենէ մը կը յիշուի ինքնակենսագրութիւնը, ուր 65–70 տարուան պատմութիւն մը անշուշտ կը բովանդակուի։ Տպուած գրքերէն են բաց ի վերը յիշատակածնէս հետեւեալները ժամանակի կարգաւ. 1863ին ի Պետրբուրգ, Քաջ Վարդան Մամիկոնեան։ — Շարարշ Բ։ — Հայոց ազգի պատմութիւնը. «Վերջը կ'իմանաք» կեղծ անունով։ — Միջնավէպք Հայոց պատմութենէն. Ա. Հայերի Երասխ գետէն անցնիլը. Բ. Տաշիրկեան Հայերը և Նոր Նախիջեւանայ հիմնարկութիւնը. Գ. Նիկոլ, կամ Հայոց ազգի տարաբաղդութիւնք Լեհաստանի մէջ (1864)։ 1864ին ի Ռոստով, Ուսումնասիրութիւն և ուսումնարանք Հայոց։ — Դիմառնական հագներգութիւն մ'է, փափուկ ոճով և մաքուր լեզուով շարահիւսուած Մրմունջք Յիսուսի ի խաչին ստանաւորը, տպուած 1875ին ի Ռոստով. դարձեալ նոյն տեղ և նոյն տարին տպուած է Հռիփսիմէ կամ Փրկութիւն Հայաստանի, որու համար Մասիս լրագիրը հետեւեալ գովասանքը կու տայ. «Հռիփսիմէին մէջ կ'երեւին սոսկալին ու սխրալին,

սաղայէլն իր բոլոր հնարքներով և զօրութեամբ, և երկրի թագաւորք իրենց մոլի կիրքերով ու բուռն իշխանութեամբ՝ կը սպառազինեին Քրիստոնեայ կուռի մը և սուրբ խաչի ներգործութեան դէմ. բայց վերջապէս պարտեալ կորագլուխ կ'անկանին։ Ի հանդէս կու գան համլմէական և հայաստանեայց դիք և դիցուհիք, պաշտօնք մեհենեաց և ախտակրեալ նշանաւոր անձինք, նահատակութիւնք Լուսաւորչին, երկունք փրկութեան Հայաստանեայց, ախտանալ Տրդատայ և լուսաւորութիւն ի ձեռն Ս. Գրիգորի, նկարագիրք և գիտաք բարձր են և յափշտակիչ[1] »։ Զմիւռնիոյ մէջ հրատարակած է նոյն թուականին երկու պատմական բանաստեղծութիւններ Մուշ Գարէտի, Աճոռշաւան. վերջնոյս համար կը վկայէ դարձեալ Մասիս, թէ «ճարտար գիտերով, քաղցր ու ընտիր բառերով ոտանաւոր բանաստեղծութիւն մ'է, հրապուրիչ ոճով գրուած և պատկերազարդ մաքուր ու վայելուչ տպագրութեամբ ի լոյս ընծայուած[2] »։ Ցաջորդ տարին հրատարակեց ի Ռոստով. Սանդուխտ դշխոյի եղբօր՝

1. Մասիս. 1876, Թ. 1861։
2. Մասիս. 1873, Թ. 1765։

Արտաշէս մանկան փրկութիւն, իսկ ի Պոլիս, Սանդուխտ դշխոյի և կուսի պատարագ, և չորս վարագուրի բաժնուած աշխարհաբար ոտանաւորով, Սանդուխտ դշխոյի և կուսի հօր Սանատրուկ Հայոց թագաւորի արշակունւոյ վախճանն։ Նոյն 1876 թուականին լոյս տեսաւ Զմիւռնիոյ մէջ, Ծաղկաքաղ ի ցիւկատար կենսագրութեանց սրբազան Հայրապետի Ներսէսի Ե. վեհափառ և ազգասէր կաթողիկոսի ամենայն Հայոց, որ կը հրատարակուէր մաս՝ առ մաս Արշալոյսի մէջ, և աչքին տկարութեանը պատճառաւ չկրցաւ լրացնել Բ. հատորն։ Դարձեալ, Պարոյր կամ Առուծն Նինուէի, գրաբար դիւցազներգութիւն մը որ իբր շարունակութիւն է Անուշաւանայ և Պարէտի։ Նմանապէս 1876ին հրատարակած է ի Ռոստով, Երգագիր Հայոց պատմութիւնը որոյ «տեղն և դասաւորութիւնք պարզ են, և այնքան նոր նոր տեսացուածքները կը հանդիպի ընթերցողն, որ կրնայ ըսուիլ թէ քննական հնախօսութիւն մ՚է պատմութեան, իմաստասիրական տեսութիւնքն ալ խիստ հետաքրքրական են[1]»։ Յիշենք վերջին հրատարակութիւնն ալ ի

1. Մասիս, 1876, թ. 1861։

*Զմիւռնիա եղած 1877ին, Զաւաճ և փառ-ճակ Ա. անուամբ ազգային քերթուածի մը։*

*Տէր Գաբրիէլ Պատկանեանի բնաւորու-թեան յատկութիւններն էին կամքի ոյժ, յարատեւ եռանդ, կենցաղավարութեան մէջ չափաւորութիւն. նիւթական և բարոյական նեղութիւնները չի թուլացուցին իր արիու-թիւնը, որով նա բաղդին յաջող և ձախորդ օրերուն մէջ անբաժան պահեց գրիչը։ Գող-տրիկ ոճով գրուած են Պատկանեանի ոտա-նաւորները, յիշենք միայն «Յուլունեան Շա-միրամայ» ոտանաւորը, ուր Գողթան բամ-բռան հնչիւնները կը փորձէ արծարծել։ Իրեն ծանօթ գիտնականաց մէջ կը յիշուի Լեհացի բանաստեղծը Միցկեվիչ, որ երդ մ'ալ նուի-րած է անոր, հիմնալով խելքին և կրթու-թեան վրայ։*



# ԽԱՉԱՏՈՒՐ ԱԲՈՎԵԱՆ

**1804 — 1848**

---

ԻՆՆԵՒՏԱՍՆԵՐՈՐԴ դարուն անդրանիկ մատենագիրն է Աբովեան․ նա աշխարհաբար լեզուին համար այն դերը խաղաց ինչ որ Տանդէ մը Իտալերէնի։ Ռուսահայ գրիչներ իր բացած ճամբէն յորդորուեցան և անոր Վէրք Հայաստանի վէպը․ հիմն ընդունուեցաւ նոր լեզուին։ Ժողովրդեան լեզուն, ժողովրդական տառապանքները, մէկ խօսքով զուտ հայկական միտքն էր անոր ոգին, և անով հմայիչ վիպասանի մը շուինդն հանեց։

Ծնաւ Քանաքեռ գիւղը՝ Երեւանի մօտ. տասնամեայ՝ Էջմիածնի վանքին մէջ մանկական կրթութիւնը ստացաւ, և յետոյ երբ Ներսիսեան դպրոցը բացուեցաւ ի Թիֆլիզ, երիտասարդ Աբովեանը առաջին մտնողներէն եղաւ. հոն թէպէտ մեծ ուսում մը չառաւ, սակայն ոչ միայն իր առաջին գրու-

թիւնները ձգեց, այլ և վառեց սրտին մէջ ուսման և ազգին բուռն սէր մը որ իր ամբողջ կեանքին անշիջանելի ծարաւն եղաւ. Նոյն վարժարանի մէջ եղած ատեն տեսաւ



Խաչատուր Աբովեան

նշանաւոր Աղասիի յաղթական մուտքը, որուն ծունկերուն վրայ մեծցեր էր, և որ յետոյ իր վէպին դիւցազը պիտի ըլլար։ 1826ին կ՚աւարտէր Աբովեան, Ներսիսեան

դպրոցի ընթացքը, սակայն ուսման փափաքը աւելի սաստկացած էր. կարդացեր էր ինքը Մխիթարայ վարքը և Վենետկոյ Հայրերուն գիտնական աշխատութիւնները, թռիչ մը կ'ուզէր ընել հասնելու այդ ուսումնական վայրը. դարձաւ Քանաքեռ ճամբուն պատրաստութիւնները տեսնելու, բայց կոտորածի և արեան սարսափելի արկածները փակեցին իր ճամբան. Մնաց Աբովեան, ականատես եղաւ ահաւոր դէպքերու և անով ունեցանք մենք Հայաստանի վէրքը։ Տարի մը վերջ խաղաղութիւնը կը տիրէր, Աբովեան եկեղեցական ըլլալու հակամէտ էր և երբ վարանած իր մտաւոր յառաջադիմութեան բեւեռացոյցը կը փնտռէր և Թարգմանի ու գրագրի պաշտօնով կապուած Էջմիածին կը կենար, անակնկալ դէպք մը իր ճամբան լուսաւորեց։ Դորպատի համալսարանին ուսուցչապետ Պարրոտ 1829ին Էջմիածին կու գար Արարատ լեռը ելլելու մտքով, Աբովեան իբրեւ առաջնորդ և Թարգման շատ լաւ կրնար օգնել, և շուտով իրեն քաշեց Եւրոպացի գիտնականին սիրտը որ փութաց Աբովեանը վարձատրել, ընդունել տալով զինքը Դորպատի համալսարանը։

Ցաւագին հրաժեշտով և Հայրապետական

օրհնութեամբ Էջմիածնէն անցաւ գերմանական համալսարանը, ուր անցուց հինգ տարի սիրուելով իր ուսուցիչներէն և հիւրասիրուելով Պարրոտէ, որուն քով կեցաւ։

Աբովեան քիչ ատենէն սկսաւ գերմաներէն խօսիլ և գրականութեան, գիտութեանց ու արուեստից հետ սովրեցուցին իրեն մինչեւ կերակուր և հաց եփել «որպէս զի իր ազգին ամէն կերպով օգտակար ըլլայ»։ Հինգ տարուան մէջ ամբարեց նա կրթութեան հարկաւոր ամէն իրեր, բայց իր հայրենասէր սրտին հինգ դարէն աւելի երկար եկաւ հայրենի հողէն բաժնուիլը. թէպէտ շրջապատուած ամենազգի զգուանքներէ և եւրոպացի գիտուն անձինքներէ՝ Աբովեանի սէրը խարիսխ չնետեց, հոն կանգ առնելու համար։ 1836ին գիտութեան մեծ պաշարով հայրենիք կը դառնար նա յուսոյ առագաստները բացած, «պիտանի ըլլալու Ազգին և Հայրենեաց». կը մտածէր դպրոց հաստատել ժողովրդեան ուսուցիչներ պատրաստելու համար, համարելով իբր միակ միջոց ազգին զարգացման. կ'ուզէր Էջմիածնի վանքին աշակերտաց կրթութեան մասնակցիլ. փափաք կը յայտնէր եկեղեցական ըլլալ. գործելու եռանդեամբ բորբոքուող

պատանին դեռ նախանձու ցուրտ հովը չէր կրած, շահախնդրութիւն և ատելութիւն անծանօթ էին իրեն. մերժուեցան կամ խափանուեցան իր ամէն առաջարկները, որովհետեւ Գերմանիա սորված էր, և նոր գաղափարները, օտար ուսումը՝ կասկած կու տային բողոքականութեան: Սակայն Աբովեան տգիտութեան առաջին հարուածին տակ չընկճուեցաւ, գնաց Թիֆլիզ և կարօտութեան զիջանելով, արքունի դպրոցին մէջ սկսաւ պաշտօն վարել, փակ գտնելով իր դիմաց ազգային դպրոցներու դռները: Աբովեան որչափ կը փափաքէր ինքզինքը հայրենեաց նուիրել, պարագաներն ալ ընդհակառակն Եւրոպայի հետ զինքը կը կապէին. տէրութիւնը իրեն յանձնեց Կովկասը ուսումնասիրող Վակնէր անուանի ճանապարհորդը առաջնորդել. ծանօթացաւ դարձեալ Պոտէնշդէտ քերթող մատենագրին, որ Կովկաս եկած էր արեւելեան ժողովրդական երգեր հաւաքելու, որուն հայկական երգերու տետրակ մը նուիրեց գերմաներէն թարգմանութեամբ, և անոնցմէ ընտրելագոյնները հրատարակուեցան գերմանական տաղաչափութեամբ: Բարեկամացաւ նաեւ Հակսթաուսէն մարգիզին և ձեռագիր տեղեկութիւններ հա-

ղորդեց ազգային սովորութեանց և ժողովըր-դական զրոյցներու։

1839ին ամուսնացաւ գերմանուհւոյ մը հետ. քիչ վերջն ալ գոհ չըլլալով միայն ուսուցչի և տեսչի սահմանափակ շրջանակին մէջ մնալ, առանձին գիշերօթիկ վարժոց բացաւ, ուր կ'ընդունէր Հայ և վրացի տղաք-ներ, զորս գիտցաւ այնքան լաւ կրթել, որ Վակնէր յափշտակուած հետեւեալ կերպով կը գովէ. «Այս դպրոցը շատ անգամ գացի ու Հայ տղոց յառաջադիմութեանը վրայ շատ զարմացայ։ Տասը տասներչորս տա-րուան տղաք աղէկ կը կարդան ու կը գրեն Հայերէն, վրացերէն, թաթարերէն, ռուսե-րէն, գերմաներէն ու գաղղիերէն։ Ստուգիւ շատ զարմացայ, գերմաներէն աղէկ շեշտե-լով կը խօսէին ու վարպետին իմ առջեւս գրել տուած բաներէն տեսայ որ գերմանե-րէն լեզուի և կազմութեան աղէկ տեղեակ էին, իմ առջեւս Կեթէին ու Շիլլէրին գոր-ծերը կարդացին։ Ամէն անգամ աս դպրոցը գալուս ու այս կայտառ տղաքը տեսնելուս մեծ ուրախութիւն կը զգայի, մանաւանդ բարեկամական ու ընտանեկան վարմունքը, քաղաքավարութիւնն ու վարժութիւնը զիս շատ կ'ուրախացնէր։ Իրենց վարպետին վրայ

շատ սէր ունին, որովհետեւ թէ կրթութեան ու գիտութեան մէջ յառաջացնելու և թէ իրենց հանգստութեանը շատ փոյթ կը տանին»։

Աբովեան իր կրթական գործին հետ ժամանակ կը գտնէր զանազան դասագրքեր յօրինելու, սակայն անոնց տպագրութեանը համար թափած ճիգերը անյաջող ելան. Նա ժողովրդեան լեզուն, Երեւանի բարբառը կը գործածէր, որով զուրկ կը համարուէր իր աշխատութիւնը գրական արժանաւորութենէ։ Աբովեան աշխարհաբար գրելու գաղափարը դեռ Գերմանիա եղած ատեն յղացած էր, գիտէր ինքը գրաբարը և նոյն լեզուով նամակներ և իր յուշերը կը գրէր. բայց լաւ ըմբռնած էր թէ ժողովրդեան միտքը ու սիրտը կրթելու համար, անհրաժեշտ կարեւոր էր հասկնալի լեզուով մը անոր խօսիլ. Իր առաջին փորձը աշակերտացը վրայ ուզեց ընել, տալով անոնց ձեռքը աշխարհաբար քերականութիւն և ռամկական լեզուով առակներ, երգեր ու ոտանաւորներ։ Յանդուգն էր իր ձեռնարկը այնպիսի միջավայրի մէջ, ուր նախանձը և տգիտութիւնը զինուած էին իրեն դէմ՝ հին, աւանդական լեզուին պաշտպան հանդիսանալու դիմակով։

Անոր այլեկոծ սիրտը այսքան դառնութեանց մէջ ժայռ մը կը փնտռէր փշրուելու համար. տխուր ու մելամաղձոտ՝ վշտերու թոյնը կուզէր դուրս պոռթկալ. ահա այսպիսի ժամանակ և այդ ազդեցութեան տակ գրել սկսաւ իր Հայրենասիրի ողբը Վէրք Հայաստանին. Նոյն տարին 1841 թուականն էր, Աբովեանի ամենէն տենդոտ ժամանակը, անհաց, անջուր, անքուն « երեսուն թաբաղայ » լեցնելու միջոցը. և գրեթէ բոլոր աշխարհաբար գրուածքները նոյն տարւոյն մէջ գրած է, գիշերները գրաւոր պարապմանց՝ իսկ ցերեկները աշակերտներուն զարգացման ըզբաղելով: Բայց Աբովեան Թիֆլիզէն ալ բռնադատուեցաւ հեռանալ և իր սիրասուն աշակերտներէն բաժնուիլ, զոհ ըլլալով իր պաշտօնակիցներուն նախանձին. կ՛երթար Երեւան, իր սիրելի Քանաքեռին քով, նահանգական դպրոցի տեսչութիւնը ձեռք առնելու. Հոս ալ ժողվեց չորս կողմը աշակերտներ և իր հոգին էր որ կը ներշնչէր անոնց մէջ, կը մասնակցէր անոնց խաղերուն և զուարճութեան, կ՚առաջնորդէր զիրենք այգիները կամ կարկաջահոս Զանգուի ափունքը, երբեմն Ս. Գեղարդ և զանազան ուխտատեղիներ: Նոյն ժամանակները Ե-

բեւան կու գար Աբիխ ճանապարհորդը, զոր Աբովեան Ներսէս Աշտարակեցիի յանձնարարութեամբ պտըտցուց Արարատայ, Պայազիտի և Մակուայ սահմանները։ Երբ Ներսէս կաթողիկոսութեան գահը բարձրացաւ, Աբովեանի սրտին մէջ դարձեալ վառուեցաւ եկեղեցական ըլլալու փափաքը, նամակով մը կը պարզէր իր միտքը թէ կ'ուզէր թողուլ որդիքը և կինը, քաշուիլ աշխարհէ, ինքզինքը նուիրելու համար աւելի ընդարձակ գործունէութեան. «աւուրք իմ անցանեն ընդ վայր, զօրութիւն իմ սպառի օր ըստ օրէ, միտք իմ գլանայ, ցանկութիւնք իմ մեռանին, տեսանեմ ըղտարաբախտ վիճակ հայրենեաց և չունիմ հնար և միջոց օգնել նմա իւիք, որ էր առաջին և վերջին նպատակ կենաց իմոց»։

Ներսէս բացէ ի բաց չմերժեց անոր խընդիրը, այլ առկախ ձգեց, բայց Աբովեանի համար տանջանք մ'էր անորոշ ապրիլը։ 1847ին ուզեց Բեդրսպուրկ ճամբորդութիւն մ'ընել, սակայն ժանտախտը իր ճամբան գոցեց. նոյն տարին պետական ծառայութենէ և պաշտօնէն արձըկուեցաւ։ 1848ին կաթողիկոսը զինքը Թիֆլիզ կը հրաւիրէր Ներսիսեան դպրոցի տեսչութեան համար,

բայց Աբովեան չանսաւ իր իղձերուն իրագործումը. նոյն տարւոյն ապրիլի երկուքին անյայտ եղաւ, խորհրդաւոր քող մը ձգելով իր կենաց վերջին վրայ։ Նոյն քողը այսօր պատմական հետազօտութեանց շնորհիւ վերցուած կը համարուի և Աբովեան ամէն աբատաւոր կասկած իրմէ սրբելով, գաղանային բարբարոսութեան մը զոհ եղած կը նկատուի։

Մեծ եղաւ Աբովեանի ազդեցութիւնը իր դարուն վրայ. նա իր կենդանութեան մէջ այնչափ չէ գործեց որչափ մահուընէն վերջ. ռուսահայ մամուլը հայր կը խոստովանի զինքը իր լեզուին, մատենագրութեան. և յիրաւի, նա բացի քաջ դաստիարակ մ'ըլլալէ, ախուր վիպասան մ'է, զգայուն բանաստեղծ և աշխարհաբարի ռահվիրայ։ Իր գրութիւններէն միայն Վէրք Հայաստանի վրայ կ'ուզեմ խօսիլ որ գլուխ գործոցն է ոչ լոկ ծաւալով այլ և զգացումներուն և ոճին բարձրութեամբը, միւս իր ամէն արձակ և ոտանաւոր գրուածներուն մէջ[1]։ Ժողովրդա-

1. Օվսաննայ, պատմութիւն. — Պարապ վախտի խաղալիք, ոտանաւորներ, առակներ. — Թեոդորայ կամ որդիական սէրը. Սիպերիոյ աքսորականներուն վէպը Թարգմանութեան վէ-

կան լեզուով գրուած այդ ժողովրդական դիւցազներգութիւնը յաղթական կոթող մը, սահմանագլուխ մ'է գրաբարի և աշխարհաբարի միջեւ. Աբովեան կ'ողբայ անով Երեւանի գաւառին մէջ կատարուած անլուր խժդժութիւնները ռուս և պարսիկ պատերազմի ատեն, երբ անհաւատները քրիստոնեայ սուրբն չկարողանալով դիմադրել, որ կը թափեն և վրէժնին կը խնդրեն անտէրունչ հայէն։ Եղերերգութեան հետ խառնուած է հոն դիւցազներգական վսեմ նկարագիրներ ալ. Աղասի անոր ոգին և շունչն է. իր անունէն պարսիկները կը դողան, իսկ իր «գեղջցիքը բոլոր նրա արեւովն էին խնդում, նրա գլխով երդում ուտում։ Ամէնի աչքը նրա վրայ էր, նրան էր գովում, նրան օրհնում։... Նրա ձէնը լսէլիս, նրա բոյը տեսնէլիս, սիրտերը կրակ էր ընկնում, խելքերները գնում, ուզում էին իրանց հոգին հանեն, նրան տան։... Սաղ

ընծայած. — Մտածմունք ի տեսակէ հայրենեաց, գրաբար համառօտ ոտանաւոր. — Նախաշաւիղ կրթութեան ի պէտս նորավարժից, տանաւորներ, առասպելներ, խաղեր. — Ճանապարհորդութիւն Պր. Պրոֆ. Պարրոտի և Խ. դպրի Աբովեանի, գրաբառ։

գեղը է՛նքան էր նրա սիրովը վառվել, որ մինչեւ նրա վրայ խաղ էլ էին հանել, իրանք ասում, էրէխէքանցը սովորցնում »։ Աղասի՝ Աբովեանի իտէալն է, անոր ամէն բարեմասնութիւն կու տայ, քաջութեան, գեղեցկութեան և սրտի ազնուութեան. անվախ կը կռուի նա թշնամիոյն հետ, բայց միանգամայն վեհանձն է երբ յաղթուած ոտքին առջեւ խոնարհի անիկայ՝ մէկ խօսքով, Աղասի, Աբովեանի մտքին մէջ ամբողջ հայ ազգն է, զոր կ՚ուզէ իր բուռն սիրով և փափաքով այդ կատարելութեան հասած տեսնել։

Աբովեանի ոճը, կը կրկնենք Զօպանեանի հետ, բացարձակապէս անձնական է, մոլեգնաբար արեւելահեւ ու հայադրոշմ. հինգ տարուան եւրոպական կեանքէ ու համալսարանական ուսումնասիրութիւններէ յետոյ, Աբովեան իր վէպին մէջ կը մնայ գեղջուկ մը. բայց ճիշդ անոր համար այդ գեղջուկը գրագէտ և մեծ գրագէտ է, որովհետեւ գիտցած է խտացնել իր էջերուն մէջ, և հզօր համադրութեամբ մը ներկայացնել, գիւղը, ամբողջ գիւղը։

Վէրք Հայաստանին այնպիսի վէպ մ՚է որ զմարդ կը բորբոքէ և կը ձգէ իր հրապոյ-

*րով, Թէպէտեւ գիւղի մը շրջապատին մէջ ընթերցողը կաշկանդէ։ Անոր լեզուին խորտութիւնները կը հարթուին և միպասանական պակասութիւնք աչքէ աներեւոյթ կ'ըլլան, եռանդուն, զգայուն մենախօսութիւններով, պարզ և սրտաճմլիկ նկարագիրներով. որոնք հեղինակին շունչին կայծերն են և սրտին անկեղծ բաբախիւնները։ Աբովեան անոր մէջ կը պատկերանայ մեզի ամենէն ազնիւ և վեհ զգացումներով, փափուկ և հայրենասէր սրտով. և մեր մտածութեանց հետ կը բարձրացնէ նաեւ մեր համարումը իր հոչակին վրայ. մէկ խօսքով, կը ստիպէ զմեզ ոչ միայն մեծարել զինքը իբրեւ մեծ մատենագիր մը, այլ և կը յափշտակէ մեր սէրը*[1]։

1. Կենսագրութեանս աղբիւրներ. — Լումայ, 1896. Ն. Տէր Կարապետեան։ — Անահիտ, 1898։ — Խաչատուր Աբովեանի երկերը, 1897. Յառաջաբան, Ստ. Տէր Սարգսեանց։ — Զգացմունքների աշխարհ, 1898. Իս. Յարութիւնեանց։ — Հմմտ. Արեւմուտք. 1859, Թ. 6, 7, 10։ — Մասիս. 1869, Թ. 931, 932։

# ՍՏԵՓԱՆՈՍ ՊԱԼԱՍԱՆԵԱՆ

**1837 – 1889**

---

ՌՈՒՄԱՆԻԱՑԻ *Պոթուշան քաղաքը ծնած, տասնը հինգ տարուան հայրը կորսընցնելով, ազգային հոգաբարձութենէն Փարիզ կը ղրկուի Մուրատեան վարժարանի մէջ ուսում առնելու. երեք տարի վերջ երբ, գժտութեամբ մը, Այվազովսքի Հայկազեան դպրոցը կը բանայ հոն, Պալասանեան անկէ՝ իր նախկին տեսուչէն, չի բաժնուիր, և ուսումն աւարտելով* 1858*ին կը դառնայ հայրենիք։ Բայց հազիւ ոտքը հոն կը դնէ, հրաւէր մը կը հասնի Այվազովսքիէն, որ Խալիպեան դպրոցը հիմներ էր Թէոդոսիայի մէջ, որով Պալասանեան կ'երթայ աջակցելու անոր ուսուցչի պաշտօնով. այս դէպքը կը բանայ Պալասանեանի դիմաց ուսուցչութեան ասպարէզը. հոն ժամանակ կը գտնէ յօդուածներ տալու Մասեաց Աղաւնի թերթին։ Սա*

կայն հարկ կ'ըլլայ շուտով հեռանալ անկից, տարբեր կուսակցութեան հակած ըլլալով, և կ'երթայ Նոր Նախիջեւանի մէջ բացուած դպրոցը զօրացնելու. բայց Այվազովսքի



Ստեփաննոս Պալասանեան

իր բոլոր ազգեցութեամբ կռուելով, իբրեւ վայրկենական փոթորկի մը մէջ կը տապալէ այդ դպրոցը։ Պալասանեան կը քաշուի Թիֆլիզ։ Հոն ի սկզբան մասնական դասեր կու տայ, ետքը կ'ընդունուի Ներսիսեան վարժարանի մէջ, ուր տասնութ տարի Հայերենի և ընդհանուր պատմութեան ու գրականութեան և գաղղիերենի դասատու

կ՚ըլլայ: Կը սորվի ռուսերէնը, կը փոխէ իր հպատակութիւնը, և տէրութեան դպրոցի մէջ ուսուցիչ կ՚ըլլայ հայերէնի և գաղղիերէնի: Ձրի դասախօսութիւն կ՚ընէ հինգ տարի Գայիանեան՝ աղջկանց վարժարանի մէջ: 1881ին Գէորգ Դ. Կաթուղիկոսի հրաւէրով Էջմիածին կ՚երթայ, ճեմարանի մէջ Հայոց պատմութիւն և գաղղիերէն դասախօսելու. Երախտագէտ աշակերտները երկու տարի վերջ կը տօնեն իրեն քսանըհինգամեայ ուսուցչութեան յոբելեանը, և հինգ տարի ետքը՝ երեսնամեայն. բայց նա տարի մը յետոյ կը կնքէ իր 52 տարուան կեանքը շատ յոյսեր իր հետ մարելով:

Եթէ Պալասանեանի գործունէութիւնը ուսուցչութեան մէջ միայն սահմանափակուէր շատոնց կը մոռցուէր իր անունը. բայց նա նշանաւոր մատենագիր ալ է, և իր գրքերով անմահ մնացած է: Յիշեցինք Մասեաց Աղաւնիի յօդուածներ տալը. Թիֆլիզ գալէն ետքը կ՚աշխատակցէր Կռունկի, քիչ մ՚ատեն Մեղու Հայաստանիի խմբագրի պաշտօն վարած է, Մշակի մէջ իր բանասիրական բաժինն ունէր. սակայն ամենէն հմտալից յօդուածները Փորձի մէջ զետեղած է, ուր մատենախօսական յօդուածները «Գրիչ» ստորա-

գրութեամբ լոյս տեսած են։ Փոքրը դաղրելէ վերջ քանի մը գրուածներ ալ տուած է Վարժարան ու Արարատ ամսաթերթերուն։

Պալասանեան գլխաւորապէս զբաղած է հայերէն լեզուի և պատմութեան վրայ. «լեզուն և պատմութիւնը, կ'ըսէր, մեր վերածնութեան երկու անհրաժեշտ լծակներն են»։ Նա ինչպէս աշխարհաբարը նոյնչափ և գրաբարը կը պաշտպանէր և կը սորվեցնէր. մէկուն համար «Մայրենի լեզուի» միւսին՝ «Գործնական քերականութիւն» շինելով։ Ինքը արեւմուտք ծնած և կրթուած, երբ Թիֆլիզի մէջ ասպարէզ գտաւ, ստիպուեցաւ սորվիլ և գրել արեւելեան լեզուն, և անոր գլխաւոր և սովորական ձեւերը հաւաքելով հրատարակեց աշխատութիւն մը «Ընդհանուր տեսութիւն արեւելեան նոր գրաւոր լեզուի հայոց», օգտուելով Քննական քերականութենէն. և ուրիշ մը «Փոքր քերականութեան գաւառական հայ լեզուի»։ Ասոնցմէ զատ յօրինած է երկու դասագրքեր ալ, «Ընթերցարան մանկանց», «Այբբենարան հայ. և ֆրանս.»։ Իսկ «Պատմ. Հայոց Գրականութեան», ընտիր գործը չենք գիտեր ինչ պատճառաւ թերի մնացած է. որովհետեւ Ա. մասը միայն հրատարակուած է։

*Սակայն աւելի պատմական հմտութեամբ հռչակուած է Պալասանեան. իր Հայոց պատմութիւնը որ մահուընէն վերջը լոյս տեսած է, գլուխ գործոցն է։ Նա իր մէկ քննադատութեան մէջ*[1]*, երբ ազգային պատմութեան դասագրքերու վրայ ակնարկ կու տայ, հետեւեալ պահանջները կ'ընէ պատմագիրէ մը. «Պատմաբանի պարտքն է ներկայացնել պետութեան ներքին կազմութիւնը, ցուցնել թէ ի՛նչ յարաբերութիւն ունէր քաղաքական իշխանութիւնը կրօնական իշխանութեան հետ, նախարարական տներու հետ. տեղեկութիւններ տալ արուեստներու, վաճառականութեան և մտաւոր կեանքի վիճակի վրայ». այս խօսքերով կարծես իր պատմութեան գրքին ծրագիրը կու տայ, ուր աշխատած է կապակցել ազգային պատմագրութիւնը դրացի ազգերու պատմութեան, արտաքին պատմիչներու և բեւեռագրերու հետ, և պատմական դէպքերը ճոխացնել հնախօսական ծանօթութիւններով և խորհրդածութիւններով. այնպէս որ տասնըհինգ տարիէ ի վեր ուրիշ բարձրագոյն դասագրքերու մէջ դեռ առաջնութիւնը կը վայելէ։ Եւ եթէ ունի*

1. Փորձ. Բ. Թ. 3, էջ 283–311։

նա թերութիւններ, սակայն պէտք ենք նկատել որ մահուընէն վերջ հրատարակուած գիրք մը, հեղինակին ոգւոյն և գիտութեան կէսը հազիւ կրնայ բովանդակել։

Պալասանեանի դիտողութիւնները սուր են և զինուած անաչառութեամբ. իր քննադատութիւնները կարդացած ատեննիս կարծես Ստեփանոս Մալխասեանցի հմտալից գրութիւնները կը թերթենք, այն տարբերութեամբ որ սա մատենագրական ճիւղը մշակած է իսկ Պալասանեան պատմականը։ Գիտէ Պալասանեան գնահատել մեր պատմիչներէն իւրաքանչիւրը, և հինգերորդ դարու վրայ զմայլած ատեն, խարազանի տակ կ'առնէ մեր հին շատ մը պատմիչ անունով պատմագիրները, հարուածելով անոնց միակերպութիւնները, ընդօրինակութիւնները, քնարերգական ոճերը, աւելորդապաշտութիւնները։ Քննադատութեան յաղթական նոր գիւտերը ընդունած է իր գրութիւններուն մէջ. կը խորհրդածէ թէ ինչպէս Եղիշէի պատմութիւնը Մակաբայեցւոց գրքին ազդեցութիւնը կրած է, այնպէս ալ Ագաթանգեղոսինը Դանիէլի մարգարէութեանը. Հռիփսիմէն՝ Շուշանն է. Լուսաւորիչ՝ Դանիէլը, որ կուռքերը կը կործանէ, գուբը կը ձգուի, հրաշքով

կը կերակրուի. իսկ Տրդատ՝ Նաբուգոդոնոսորը։ Լեզուական պայքարին մէջ պահպանողական դերը կը բռնէ, կը խորշի Ջերագի չափազանց գրաբար ձեւերէն. միամիտ համոզում մ՚ունի Մխիթարեանց վրայ, ինչպէս առհասարակ բոլոր ռուսահայ հին գրիչներ, թէ անոնք կ՚ատեն աշխարհաբարը, և գրաբարով կ՚ուզեն իրենց հեղինակութիւնը ժողովրդեան մէջ անխախտ պահել. այս գաղափարը Լէօ իր Տպագրութեան պատմութեամբ և Նազարեանցի կենսագրութեան մէջ քանի մը կէտերով, տապալեց. ցուցընելով Մխիթարի ձեռքին մէջ աշխարհաբար քերականութիւնը և քրիստոնէականը և Մխիթարեանց վաթսընամեայ Բազմավէպը[1]։

1. Կենսագրութեանս աղբիւրն է Լումայ. 1896. Իա. Յարութիւնեան։ – Համմ. Արեւելք, 1899, Թ. 1582։ Տարազ. 1892։

# ՍՄԲԱՏ ՇԱՀԱԶԻԶ



ՀԻՒՍԻՍԱՓԱՅԼ *իր կրակոտ ճառագայթները ամփոփեր էր, Ստեփանոս Նազարեանցի բողոքներուն աղմուկը լռեր էր. Ռուսաստանի սիրտը՝ Մոսկուա, հայութեան համար դադրած կը թուէր բաբախելէ, 1864 թուականն էր։ Գործունեայ օրուան բանաստեղծ գիշերը կը յաջորդէ. ահա հայ գրականութեան երկնակամարին վրայ կը բարձրանայ Շահազիզ, մինչ Նազարեանց կը խոնարհէր տալով իր լուսաւոր գաղափարները նորածագ*



*Սմբատ Շահազիզ*

*աշխատակցին։ Նոյն լոյսը որ Նազարեանցէ ցոլացած առեն կիզիչ է, կը հրապուրէ բանաստեղծ Շահազիզէն գալով։ Շատ անգամ արձագանգը ձայնէն աւելի անուշ է։*

*Շահազիզ տասը տարեկան հազիւ կար որ հայրենի Աշտարակ գիւղը ձգած՝ Մոսկուա եկած էր. վեց տարուան եղած ատեն կորուսած էր հայրը, Տէր Սիմէոն քահանայն, և մայրենի խնամքի և գորովանքի տակ, ստացած էր զգայուն սիրտ մը։ Իրեն երկրորդ հայրենիքը եղաւ Լազարեան ճեմարանը ուր եկաւ 1852ին, և տասը տարուան մէջ ընթացքը աւարտելէն ետք, մնաց իբր ուսուցիչ՝ հայերենի, նախապատրաստական դասարանի մէջ, և Մսեր մագիստրոսի մահուընէն վերջ շարունակեց բարձր դասարաններու մէջ, մինչեւ 1897։ Միայն 1873ին գնաց հայրենիքի կարօտը առնելու։*

*Շահազիզի անուան կապուած է մանկավարժ — բանաստեղծ — հրապարակախօսի հռչակը։ Բանաստեղծ Շահազիզը կը սկսի իր երիտասարդ հասակէն։ Դեռ դպրոցական նստարանի վրայ, ոտանաւորներ կը գրէր, և առաջին ոտանաւորները որոնք 1859ին Ծաղկաքաղի մէջ տպուեցան, գրաբար էին։ «Բայց այդ սկզբնական մեղքից շուտ ազատ-*

վեց Շահազիզեանը, կ'ըսէ Լէօ, Թողնելով Թէ գրաբարը և Թէ մանաւանդ ճռաքաղը»։ Նոյն մեղքին մէջ, ուրիշ բանաստեղծ մը՝ Գամառ-Քաթիպա ալ, ինկած էր։ Շահազիզ իր աշակերտութեան օրերէն կը ծանօթանայ եւրոպական մատենագրութեան, ցամաք հայ գրականութիւնը. սնունդ չէր կրնար տալ իր տաղանդի զարգացման. Բուշքին, Շէյքսբիր, Կէօթէ մերթ ընդ մերթ իրենց ազդու տողերով կ'երեւան անոր ոտանաւորներուն մէջ. բայց ամենէն աւելի անգլիացի բանաստեղծը՝ Պայրըն անոր մտքին լապտերը կ'արծարծէ։ Պայրընի 1807ին հրատարակած «Ազատութեան ժամերը» կը ներշնչէ Շահազիզի, նոյն տիտղոսով բանաստեղծութիւններու հատորիկ մը հանել 1860ին, որոնք նման զգացումներու արտայայտութիւններ են սիրոյ ու հայրենիքի վրայ. հոն կը նշմարուի բանաստեղծ Շահազիզի առաջին ժայթքումին բուռն զգացումները. առուակ մ'է որ իրեն աղբիւրին մօտ աւազը վեր ի վար կ'ընէ, ընթացքը առնելէն վերջ պիտի տեսնենք անոր մէջ յստակութիւն և պիտի հետեւինք անոր դիտած ու վազած նպատակին։ Այս առաջին փորձէն վերջ, Շահազիզ կը յայտնուի 1861ին Հիւսիսա-

փայլի մէջ. դեռ այն ատեն ուսմունքը չէր աւարտած ։ Հիւսիսափայլի ազդեցութենէն քիչերը ազատ մնացած են, բայց և ոչ մէկն ալ Ծաղկաքաղի չափ տոգորուած է անոր խմբագրին գաղափարներով ։ Հիւսիսափայլի մէջ գրուած ոտանաւորներէն շատերը թոյլ են, սակայն կը թողուն որ անոնց մէջ գտնենք ապագայ բանաստեղծի մը յուսոյ կայծը. և շատ ժամանակ չանցաւ ։ 1864ին հրատարակուեցաւ երկրորդ հատոր մը որ կը պարունակէր Լեւոնի վիշտը մեծ քերթուածը և վաթսունի չափ մանր ոտանաւորներ. յաղթութեան դափնին այս անգամ չէր սխալեր. Հեղինակը անով գրականութեան մէջ բարձր դիրք մը պիտի գրաւէր ։ Լեւոնի վիշտը միայն մեր ուշադրութիւնը պիտի յափշտակէ. Թէպէտ ոտանաւորներուն մէջ գտնուին այնպիսիներ որ վառվռուն և գունագոյն նկարագրութիւնով անոր հաւասարին ։ Լեւոնի վիշտը, որ Լազարեան ճեմարանի հիմնադրութեան յիսնամեակին նուիրուած է, չորս գլուխներու է բաժնուած, ամէն գլուխ հարիւր յիսունէն աւելի տուներու, և իւրաքանչիւր տուն չորս յանգաւոր տողերու, որոնք ամէն անգամ կանոնաւոր չեն, տաղաչափութիւնն ալ շատ տեղ կը կաղայ ։

*Ունի ստանաւոր նախերգանք մը կամ յառաջաբան, ուր աշխարհաբարը կը պաշտպանուի, հակառակորդք կը հարուածուին և կ'ողջունուի գրիչն ու սեղան։ Ամէն գլխու սկիզբը և վերջը կը յայտնէ իր զգացմունքները և խորհրդածութիւնները։*

*Լեւոն Մոսկուայի մէջ ուսումն առած հայ երիտասարդ մ'է, որ իր ազգին թշուառութիւնը կը տեսնէ և զայն լուսաւորել ու կանգնել կ'ուզէ. անձնանուէր է իր ազգասիրութիւնը, ոչ սոսկ զգացմունք. կ'ըմբռնէ ազգին վէրքը և կը հառաչէ «Անգին հայրենիք, ցաւերիս պատճառ»։ Նա առանձնութեան մէջ տխուր տարիներ անցընելէն վերջ կը վճռէ դառնալ Կովկաս՝ իր հայրենիքը, քարոզելու նոր սկզբունք։ Սիրած գրքերէն հետն առնելով, Կէօթէ, Հայնէ, ուր չի պակսիր Թափառաշրջիկ Հարոլտինն ալ, ճամբայ կ'ելնայ։ Տխուր տրտում կը մտնէ իր աշխարհը, բնութիւնը ամէն կողմ հիանալի է, սակայն անոր գիրկը ապրող ժողովուրդը տգիտութեան մէջ թաղուած։ Լեւոն կ'ուզէ զայն բարձրացնել, արթնցնելու այդ մեռելատիպ քունէն.*

Ով դուք Հայ մարդիկ, ո՞ւր ազնըւութիւն
Քանի՜ դիզել էք ապականութիւն.
Զըկամիք տակաւ սթափուել քնից,
Թափել ցեխերը, զարթնե՛լ դագաղից։

Բանաստեղծը կը գտնայ հոս իր բեմը, կը թողու քնարը ճարտասան ըլլալու տենչով։ Ազգասիրութեան կրակը ամենուն սրտին մէջ մարած է. հայ ծնողքը չաւանդեր իր սերնդեան սրտին մէջ կայծ մը. հայ աղջիկը մոռցած է իր լեզուն, և կը համեմատուի հոս Եղիշէի նկարագրած հինգերորդ դարու կանանց. մէկ խօսքով չկայ կրթութիւն. միթէ չկա՞ն միջոցներ, ի՞նչ կ'ընէ հայ հարուստը.

Ճեմում է Հարուստն նոյնպէս փառաւոր,
Նոյն ագահութեամբ նա երազում է
Մթերել գանձեր միլիոնաւոր —
Նորա ի՞նչ բանն է, որ Հայը մերկ է։

Վերջին երգով Լեւոն կը թափառի Հայաստանի աւերակներու մէջ և կը սգայ ազգութեան և հնութեան բեկորներուն վրայ. կը փակէ աչքերը և ահա կը կանգնին իր առջեւ Սահակ, Մեսրովբ, Ներսէս, Ղազար և ազատախոհ Լամբրոնացին, որոնք կը մեղադրեն անտարբեր հոգեւորականութիւնը։ Կ'արթննայ Լեւոն լուսաւոր գաղափարով թէ ազգը կը փրկուի լաւ ուսուցիչներով և կ'առաջարկէ բանալ հոգեւոր Ակադեմիա։

Ահա Շահազիզի հերոսին վսեմ մտածութիւններուն համառօտ բովանդակութիւնը. Լեւոն չի նմանիր Րաֆֆիի դիւցազներուն

*որոնց քաջագործութիւնը սուրերուն ծայրն է, որոնք սկզբունքէն վերջ գործի ասպարէզը կ'իջնան։ Լեւոնի վիշտը, Չայլդ Հարոլտի ցաւերը և տխրութիւնը կը յիշեցընէ կամ ամբողջ Հիւսիսափայլի գաղափարներն են չափի և բանաստեղծութեան դրուած և Լեւոնին մէջ անձնաւորուած կը տեսնենք զնոյն ինքն Շահազիզ։*

*Բայց նա կը թողու բանաստեղծական պառնասը և կ'իջնայ ուսուցչութեան պաշտը, լաւ է իրեն համար սերմանել քան խոյանալը, և կը պարծենայ եւս որ շուտով զօրացաւ, խորտակեց ինքնահաւան մուսայի բռնութիւնը և ուխտեց «լինել մշակ հասարակաց պիտոյքի»։*

*Շահազիզի լռութիւնը գուցէ երկար տեւէր եթէ Երիցեանի մէկ քննադատութիւնը զինքը կռուի ասպարէզ չհրաւիրէր։ Նպատակը Նազարեանց էր. Երիցեան կը կապտէր անկէ ամէն փառք, իսկ Շահազիզ կը հաստատէր իրեն ուսուցչին գլխուն վրայ դրուած պսակը. այս վէճին արդիւնք՝ յայտնուեցաւ Շահազիզի հրապարակախօսութիւնը և* 1881*ին Հրապարակախօս Ձայն*[1] *անունով գիրքը։*

1. Քննդ. **Մշակ**, 1881 *թ*. 89։

*Անոր մէջ կը գտնենք կորովի և կարուկ ոճ մը, որով կը պաշտպանուի Նազարեանցի գրական գործունէութիւնը, և Գրիգոր Արծրունին եւս կը վկայէ թէ Հրապարակախօս Ձայնը յափշտակութեամբ կը կարդացուի։*

*Ուրիշ առիթով մը, ուսուցչութեան երեւնամեայ յոբելինին պատճառաւ՝ հրատարակեց Ցոբելեանի տարեդարձը[1]։ Շահազիզի համեստութիւնը չկրցաւ կապել իր երախտագէտ աշակերտներուն բերանը, 1892ին կատարուեցաւ շքեղ հանդէսը որով կը գնահատուէր իբր մանկավարժ, և տարի մը վերջ անոր տպաւորութիւնները և լաւ քնարին քանի մը թրթռումները լուեցան Ցոբելեանի տարեդարձ գեղեցկատիպ գրքին մէջ։ Հինգ տարի վերջ Շահազիզ հրաժարական ողջոյնը տուաւ Լազարեան ճեմարանին, և անոր երեսունը հինգ տարուան վաստակը ներբողեց Ալ. Ծատուրեան Երեսունհինգ տարի անունով գրքոյկով մը։*

*Շահազիզի յետին աշխատութիւններն են Ամառնային նամակները[2], տպուած 1897ին*

1. Քննդ. *Արարատ*, 1893 *թ*. 5։

2. Քննդ. *Մուրճ*, 1897 *թ*. 7–8։ — *Արձագանգ*, 1897 *թ*. 86։

*որ բանասիրական նիւթեր կը պարունակեն Հայոց հին լեզուին և պատմութեան և կրօնքին վերաբերեալ, ուր ընդհանրապէս կը պաշտպանուի Խորենացին։ Որչափ որ ընթերցողը նոր գաղափարի չի հանդիպի սակայն ախորժով կը կարդացուի կենդանի ոճին պատճառաւ։ Յիշողութիւններ Վարդանանց տօնի առիթով*[1], (*տպ.* 1901). *ճառական գրուածք մը որ հինգերորդ դարու պատկերին՝ մէջ մեր ներկայն ալ կը գծէ, և իրեն յատուկ աշխոյժ լեզուին պատճառաւ նոյնպէս հետաքրքրութեամբ կը կարդացուի։*

*Շահազիզի գրութիւններուն վրայ ընդհանուր աչք մը տալէն վերջ, պիտի հետեւցընենք թէ անիկա քնարերգակ բանաստեղծ մ'է, ճարտասանութիւնը շատ անգամ անոր ոտանաւորները կ'ոգեւորէ, առանց որոյ տաղտկալի և միակերպ պիտի երեւային։ Իրեն քնարը աւելի անձին զգացումները կը թրթռացնէ քան իր ազգին. և անոնց մէջ սէրը գլխաւոր տեղը կը բռնէ. սակայն մեծամաղձիկ ըլլալն ալ իր յատկութիւններէն մէկն է։ Անիկայ երիտասարդ հասակին՝ ոգեւորուած եւրոպական մատենագրութենէ և*

1. Քննդ. *Մուրճ*, 1901 *թ.* 1։

*մանաւանդ Լորտ Պայրընէն, սիրած և հետեւած է բանաստեղծութեան։ Լեւոնի վիշտը և արձակ գրուածներու մէջ գործածուած զօրաւոր լեզուն կը յայտնեն իր մէջ վառուող կրակը. և եթէ նա յարատեւէր իր բորբոքած բոցերը փչել հայուն երակներուն մէջ, պիտի ունենայինք Պատկանեանէ աւելի մեծ և ազդեցիկ բանաստեղծ մը, որ ծծելով օտարէն իր զգացումները պիտի հայացնէր և յարմարցնէր ազգին ճաշակին։*

*Իսկ իր ուսուցչութեան անխոնջ վաստակով, Թումբ մ՚եղաւ հայ լեզուին՝ որ այնքան մրրկալից սպառնալիքներու ենթարկուած է Ռուսաստանի մէջ։ Շահազիզ դեռ եւս իր առանձնութենէն կը լսեցնէ Լեւոնի վշտին հեռաւոր արձագանգները, ընդհատելով գուցէ քիչ մը արդարապէս մեղադրուած լռութիւնը* [1]։

1. Կենսագրութեան աղբիւրներ. *Մուրճ*, 1891-2 Եղիշէ Մադաթեան։ — *Մուրճ*, 1898 Կ. Կուսիկեան։ — *Վտակ*, 1901, էջ 334 Մ. Բերբերեան։

